*Հրատ. Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութեան*, **№ 61**

*ՎԻԼԼԻԱՄ ՇԷԿՍՊԻՐԻ*



# Մ Ա Կ Բ Է Թ

**ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ՀԻՆԳ ԱՐԱՐՈՒԱԾՈՎ**

*Թարգմանեց*

*ՍՏ. ՄԱԼԽԱՍԵԱՆՑ*



**Թ Ի Ֆ Լ Ի Ս**

*ՏՊԱՐԱՆ „ԱՐՕՐ" Տ. ՆԱԶԱՐԵԱՆ*

**1892**

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

„Մակբեթի" ներկայ թարգմանութիւնն արել ենք Շլէգէլ՛ի եւ Հիլ՛սէնբէրգի գերմաներէն երկու ընտիր թարգմանութիւնների վերայից, ի նկատի ունենալով նաեւ Ուստրեալովի ռուսերէն եւ Փոսսի ու Բիւրգերի գերմաներէն թարգմանութիւնները։ Սրանից զատ աչքի առաջ ենք ունեցել անգլիերէն բնագիրը, որի համեմատութեամբ ենք արել մեր ամեն մի տողի թարգմանութիւնը։

„Մակբեթի նախկին նիւթը" թարգմանաբար առել ենք Փրանսուայ Վ. Հիւգոյի ֆրանսերէն արձակ թարգմանութեան նախաբանից (Գ. հատոր). իսկ ծանօթութիւնները քաղել ենք մասամբ Փ. Հիւգոյի եւ մասամբ Ուստրեալովի թարգմանութիւններից։ Մեր տեղ-տեղ աւելցրած բացատրական ծանօթութիւնները կրումեն վերջում՝ Հ. Թ.

Այս թարգմանութեան մէջ մեզ գլխաւոր նպատակ ենք արել՝ հաւատարիմ լինել բնագրին։ Մենք աշխատել ենք հարազատ ընծայել Շէկսպիրի ոչ միայն մտքերն, այլ եւ ոճը, ասելու ձեւը, մինչեւ իսկ անտաշ դարձուածքներըն ու գրականութեան մէջ չընդունուած խիստ բառերը։ Այս հաւատարմութիւնը, լեզուի ներած չափով, պահպանելու համար՝ շատ անգամ մենք զոհել ենք թարգմանական լեզուի թեթեւութիւնը, պարզութիւնը եւ տաղաչափական ճշտութիւնը։

„Մակբեթը" մենք փորձեցինք թարգմանել հայկական տաղաչափութեամբ, փոխանակ սովորական դարձած տասնոտեան չափին։ Հայկական տաղաչափութիւնը բացի այն, որ զերծ է տասնոտեանի ձանձրալի միօրինակութիւնից, բացի այն, որ միջոց է տալիս, շեշտուած վան-

կերն երկար կարդալով, իմաստը կենդանի եւ բնական առոգանութեամբ արտասանելու՝ մի անհամեմատ առաւելութիւն եւս ունի, որ իւր 12—16 վանկերում՝ ընդունակ է տեղաւորելու բնագրի տողը: Եւ յիրաւի, մեր թարգմանութեան մէջ բնագրի մի տողը տեղաւորուած է մի տողում, եւ կարծեմ ամբողջ թարգմանութեան տողերի թիւը հաւասար է բնագրի տողերին:

Հայկական չափը ոտնհետեւ մեր մէջ դեռ բաւական ծանօթ չէ՝ ուստի մենք հարկաւոր համարեցինք բացատրել համառօտապէս նորա կանոնները, որպէսզի դիւրացնենք „Մակբեթի“ ընթերցումը նոցա, որոնք դեռ ծանօթ չեն այս չափին:

Ցաւում՝ ենք սակայն, որ մեզ չյաջողեցաւ ճշտիւ պահպանել տաղաչափութեան մէջ ժամանակի եւ շեշտադրութեան կանոնները: Մեր տաղաչափութեան այս թերութիւնները մենք ուզում՝ ենք արդարացնել ոչ այնչափ չարականներում՝ եւ Բագրատունու գրաբար եւ ինքնագիր քերթուածներում՝ յաճախ նկատուող նմանօրինակ թերութիւններով՝ որչափ սորանով, որ „Մակբեթ“ ընդարձակ եւ հաստատուն՝ աշխարհաբար թարգմանութիւն է, որի մէջ տաղաչափութեան կանոններին ճշտիւ հետեւողութիւնը կարող էր լինել ի վնաս մտքի հաւատարմութեան կամ՝ լեզուի բնականութեան:

Հարկ ենք համարում՝ յայտնել, թէ Հրատարակչական Ընկերութիւնը տպագրելով այս գիրքը, որի մէջ գործ են ածւում՝ ռէ, դէ, ճէ իգական ձեւերը՝ ամենեւին չէ կամեցել ցոյց տալ, թէ ինքն սկզբունքով ընդունում՝ է նոցա գործածութիւնը, այլ միայն զիջում՝ է արել մեր sine qua non պայմանին, մեր վերայ թողնելով նոցա գործածութեան բոլոր պատասխանատուութիւնը:

20 սեպտ. 1892,
Թիֆլիս:

ՍՏ. Մ.

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆ

## (ՀԻՄՆԱԿԱՆ ԿԱՆՈՆՆԵՐ)

Տաղաչափութեան բազմատեսակ ձեւերից, որ մեր նախնիները գործ էին դնում հոգեւոր և աշխարհային տաղեր յօրինելիս՝ մէկն է և „Հայկական“ կոչուած տաղաչափութիւնը։ Սա ունի մի քանի ստորաբաժանումներ. բայց սոցանից մէկը համեմատաբար աւելի է գործածուել հին ժամանակ, և այժմ էլ գործածական է՝ շնորհիւ Հ. Արսէն Կ. Բագրատունու։ Այս նշանաւոր հայկաբանն առաջինն եղաւ, որ Վիրգիլիոսի „Մշակականքը“ թարգմանեց Հայկական տաղաչափութեամբ, և թարգմանութեան Յառաջաբանում բացատրեց այս տաղաչափութեան օրէնքները (1847) [1]։ Նոյն չափով նա գրեց ուրիշ շատ քերթուածներ ևս, ի միջի այլոց „Հայկ դիւցազն“ հռչակաւոր դիւցազներգութիւնը և Իլիականի թարգմանութիւնը։ Նորա յաջող և հեղինակաւոր գրիչը ոչ նուազ ճարտար հետեւողներ ունեցաւ, որոնց միջից յիշենք միայն անդրանիկին, Խրիմեան Վեհափառ Հայրիկին („Հրաւիրակ Արարատեան“, 1850 և „Հրաւիրակ երկրին Աւետեաց“, 1851) և Եդ. Հիւրմիւզեանին, որ իւր մի անգամ արդէն թարգմանած Վիրգիլիոսի Ենէականը (1845) երկրորդ անգամ թարգմանեց այս տաղաչափութեամբ, որ տպագրուեցաւ 1879-ին։ Իսկ հին մատենագրութեան մէջ՝ բացի բազմաթիւ շարականներից՝

---

1) Հայկական տաղաչափութեան կանոններն աւանդել է համառօտապէս և Հ. Ա. Այտընեան իւր Քննական Քերականութեան մէջ, եր. 408—410։

նոյն տաղաչափութեամբ է գրուած և Գր. Մագիստրոսի Հազարտողեանն առ. Մանուչէ—„Մեծ են գործք աստուածայինն“։

Հայկական տաղաչափութեան իւրաքանչիւր տողը բաղկանում է տասնևվեց ամանակից [1]), որոնք բաժանւում են չորս անդամի, իւրաքանչիւրը չորս ամանակ տևողութեամբ. այսպէս՝

— — — — | — — — — | — — — — | — — — — |

Իւրաքանչիւր վանկ, նայելով թէ արդեօք երկա՞ր թէ կարճ տևողութեամբ է արտասանւում՝ կարող է գրաւել մի կամ երկու ամանակ։ Խիստ շեշտուած բառերը և բացագանչութիւնները, որոնք արտասանելու համար աւելի ժամանակ է պէտք՝ կարող են գրաւել երեք, մինչև իսկ չորս ամանակ։ Բայց մի տողում վանկերի թիւը 12-ից պակաս չպիտի լինի։

Ուրեմն Հայկական տաղաչափութեան տողը կարող է բաղկանալ 16—12 վանկերից, բայց չնայելով վանկերի քանակութեան՝ ամեն մի տող կարդացւում է միևնոյն ժամանակի տևողութեամբ, որովհետև բոլոր տողերն էլ 16-ական ամանակ ունին։ Այսպէս՝

1 2 3 4 1 2 3 4 1 2 3 4 1 2 3 4
Աստուածածին | խորան լուսոյ | անվայրափակ | արփւոյն կենաց |

որտեղ ամեն մի ամանակը գրաւուած է մի վանկով և իւրաքանչիւր վանկ պէտք է կարդացուի ձայնի հաւասար տևողութեամբ։

1 2 3-4 1 2 3-4 1 2 3 4 1 2 3 4
Ո՛ր եղեր | արևելք | արեգականն | արդարութեան |

որտեղ առաջին և երկրորդ անդամներում վերջին վանկերը գրաւել են երկ-երկու ամանակ, ուստի այդ վանկերը պէտք է կարդացուին կրկնակի տևողութեամբ—որ եղե՛ր արևե՛լք արեգականն արդարութեան։

1 2 3-4 1 2 3-4 1 2 3 4 1 2 3-4
Ի հաւրէ | ծագեցար | լուսաւորել | զարարածս |

որտեղ առաջին, երկրորդ և չորրորդ անդամներում վերջին վանկերը գրաւել են երկ-երկու ամանակ և պէտք է կարդացուին կրկնակի տևողութեամբ։

1) Ամանակ ասելով պէտք է հասկանանք մի կարճ վանկ արտասանելու ժամանակի տևողութիւնը։

1 2-3-4 1 2 3-4 1 2 3 4 1 2 3-4
Հովուաց | յայտնեցար | երկրպագեալդ | ի մսուր |

որտեղ առաջին անդամի երկրորդ վանկը գրաւել է երեք ժամանակ, իսկ երկրորդ և չորրորդ անդամների վերջին վանկերը՝ երկ-երկու ժամանակ, և պէտք է կարդացուին—առաջինը երրակի տեւողութեամբ, իսկ միւս երկուքը կրկնակի տեւողութեամբ—Հովուա՛՛ց յայտնեցա՛ր երկրպագեալդ ի մսու՛ր։

1-2-3-4 1 2 3-4 1 2 3 4 1 2 3 4
Քեզ | միայնոյ | մարմնացելոյդ | ի սուրբ Կուսէն |

որտեղ առաջին անդամը գրաւել է չորս ժամանակ, իսկ երկրորդը երեք ժամանակ, և պէտք է կարդացուի—Քե՛՛՛զ միայնո՛յ մարմնացելոյդ ի սուրբ Կուսէն։ Եւ այլն։

Այս օրինակներից երեւում է, որ Հայկական տաղաչափութեան տողերը կարող են բազմաթիւ եղանակներով կազմուել. որովհետև նոյն մէջ անդամը կարող է ունենալ մէկից մինչև չորս վանկ և կարող է տեղաւորուել միւս, նոյնպէս փոփոխելի անդամներից առաջ և յետոյ։ Համարողական փորձառութեամբ 12—16 վանկանի տողերի տեսակներ ստացւում են Հարիւրից աւելի. բայց դոցանից միայն քչերն են գործածւում, որովհետև տաղաչափութիւնն ունի որոշ կանոններ, որոնք սահմանափակում են տողերի այս բազմատեսակութիւնը։ Այսպէս քառամանակ վանկ (այսինքն 4 ժամանակ տեւողութիւն ունեցող մի վանկ, որ մի ամբողջ անդամ է կազմում) կարող է լինել միայն առաջին անդամը։ Երկրորդ անդամն առ նուազն պէտք է բաղկացած լինի երկու վանկից. իսկ եթէ առաջին անդամը միավանկ է՝ երկրորդը չէ կարող երեք վանկից պակաս լինել։ Երրորդ և չորրորդ անդամները երեքից պակաս վանկ չեն կարող ունենալ, և եթէ նոցանից մէկն երեք-վանկանի է միւսն ընդհանրապէս չորս-վանկանի է լինում, ևն։ Այնպէս որ Հարիւրաւոր տեսակներից մնում են գործածական 15—18 տեսակ տողեր, որոնց Համար դնում ենք մի-մի օրինակ շարականներից։

Աստուածածին | խորան լուսոյ | անվայրափակ | արփւոյն կենաց |
4—4—4—4=16

Եւ զաւրութիւն | բարձրելոյն | ի վերայ քո | հովանասցի |
4—3—4—4=15

Ի հրեշտակաց | սպասաւորեալ | Գաբրիէլ | քեզ աւետեաց |
4—4—3—4=15
Աղբիւր կենաց | բաշխող շնորհաց | Հոգին իջեալ | ի բարձանց |
4—4—4—3=15
Քահանայք | և ժողովուրդք | տօնախըմբողք | ծնընդեան կուսին |
3—4—4—4=15
Այսաւր ցընծան | երկնայինքն | և պար առեալ | ի բարձունս |
4—3—4—3=14
Որ նըստէիր | ի քերովբէս | արարիչդ | արարածոց |
4—3—3—4=14
Որ զբոցեղէն | սուրըն կապտեաց | անեղին | հրամանաւ |
4—4—3—3=14
Անապական | տաճար | և մորենի | անկիզելի
4—2—4—4=14
Այսաւր ծերըքն | ուրխնականք | մանկամբք նորոյ | Սիոնի |
3—4—4—3=14
Որ եղեր | արեւելք | արեգականն | արդարութեան
3—3—4—4=14
Ի հաւրէ | ծագեցար | լուսաւորել | զարարածս |
3—3—4—3=13
Դրախտ | անտուածային | և արևելք | իմանալի |
1—4—4—4=13
Հովուաց | յայտնեցար | երկըրպագեալդ | ի մոգուց |
2—3—4—3=12
Քեզ | միայնոյ | մարմնացելոյդ | ի սուրբ կուսէն |
1—3—4—4=12

Այսպէս նաև 4—2—4—3. 2—4—4—4. և անկանոն կերպով՝ 1—3—4—3։

Հայկական տաղաչափութիւնը տողերի մէջ պահպանելով ոչ թէ հաւասար թւով վանկեր, այլ հաւասար ժամանակ՝ նըմանում է դասական լեզուների չափական (métrique) տաղաչափութեան։ Բայց երկուքին մէջ, թողնելով ուրիշ տարբերութիւնները՝ այս հիմնական տարբերութիւնը կայ, որ Չափական տաղաչափութեան մէջ վանկերն ի բնէ կարճ կամ երկար են. այնպէս որ հեղինակը որևէ բառ գործածելիս՝ տաղաչափութեան մէջ նորան պէտք է տայ այն տևողութիւնը, որ

բառն ունի ինքն ըստ ինքեան։ Իսկ Հայկական տաղաչափութեան մէջ այդպէս չէ. վանկն ինքն ըստ ինքեան երկար կամ կարճ չէ։ (Ո՛չ ներկայ լեզւում մենք տարբերում ենք երկար ու կարճ վանկեր, և ոչ շօշափելի ապացոյցներ ունինք, թէ մեր գրականութեան միջին դարերում տարբերելիս լինէին երկար ու կարճ վանկեր բուն Հայերէն արտասանութեան մէջ)։ Հայկական տաղաչափութեան մէջ վանկը երկար կամ կարճ է լինում՝ նայելով իւր կրած տրամաբանական շեշտին։ Միևնոյն վանկը կարող է երբեմն արտասանուել առանձին ուժգնութեամբ կամ զգացմունքով—և կլինի երկար, կարող է արտասանուել և սովորական ձայնով, առանց շեշտի և ըզգացմունքի—և կլինի կարճ։ Ուրեմն Հեղինակի կամքից է կախուած բառին տալ այնպիսի գործածութիւն կամ շեշտ, որ նա երկար կամ կարճ լինի, համաձայն խօսքի իմաստին և տաղաչափութեան պահանջին. ինչպէս երևում է հետևեալ օրինակներում.

Դրախտ աստուածային | եւ արևելք | իմանալի։
Որ եղեր | արևե՛լք | արեգական արդարութեան։
Ի հրեշտակաց սպասաւորեալ Գաբրիէլ | քեզ աւետեաց։
Քե՛զ | միայնոյ մարմնացեալդ ի սուրբ Կուսէն։

Առաջին տողում *արևելք* բառը կարճ է, երկրորդում՝ երկար. երրորդ տողում *քեզ* բառը կարճ է, իսկ չորրորդում երկար։

Բայց այս ընդհանուր կանոնին դէմ բացառութիւններ պակաս չեն թէ հին և թէ նոր քերթուածներին մէջ։ Պատահում է, որ բառը կամ բառի վանկը թէպէտ չունի տրամաբանական շեշտ և զգացմունքով արտասանուելու չէ՝ այնու ամենայնիւ երկամանակ, մինչև իսկ եռամանակ տևողութեամբ պէտք է կարդացուի. և ընդհակառակն՝ յայտնապէս շեշտուած բառը կամ վանկը՝ տաղաչափութեան մէջ կարճ պէտք է արտաբերուի։ Պէտք է ասել, որ Հայկական տաղաչափութիւնը, չնայելով իւր՝ շուրջ հազար տարի գոյութիւն ունենալուն՝ դեռ գտնւում է իւր կազմակերպուելու շրջանին մէջ և վերջնական մշակութիւն դեռ չէ ստացել։ Այս պատ-

ճառով հին քերթուածներում պատահած խոտորումներն և զուգէ տաղաչափական սխալներն ընդունուած են իբրև կանոնաւոր երևոյթներ, և իբրև կանոնաւոր՝ մտել են նաև նորագոյն քերթուածներին մէջ։

Շեշտը Հայկական տաղաչափութեան մէջ նոյն կանոնովն է գործածւում՝ ինչպէս և վանկական տաղաչափութեան մէջ. այսինքն նա ընկնում է անդամի վերջին վանկին վերայ, այնպէս որ ամեն անդամ վերջանում շեշտուած վանկով։ Օր.

Որ եղե՛ր | արևե՛լք | արեգակա՛նն | արդարութեա՛ն |
Քե՛ղ | միայնո՛յ | մարմնացելո՛յդ | ի սուրբ Կուսէ՛ն |

Այս ընդհանուր կանոնի հիմամբ՝ ամդամը կարող է վերջանալ շեշտուած վանկով՝ թէպէտ և բառը վերջացած չլինի. Նորա մնացած անշեշտ մասը փոխադրւում է յաջորդ անդամը։ Օրինակ՝

Այսօր վերի՛ | նըն Սիո՛նի։
Ծոխանա՛մ | մըք Նոքաւք։

Բայց շեշտի վերաբերութեամբ էլ պէտք է նկատենք, որ թէ՛ հին և թէ՛ նոր քերթուածների մէջ պատահում են խոտորումներ վերոյիշեալ կանոնից, այսինքն պատահում են անդամներ՝ որոնց վերջի վանկն անշեշտ է։ Օր.

Այսաւր վերի | նըն Սիովն | երգէ զն՛րգըմ | սրովբէից։ |
Որ զարդարեալ | Նորոգես | միշտ ըղնոր քո | զեկեղեցի։ |

# Մակբեթի նախկին նիւթը

Մա՛լկո՛լմ Բ-ից յետոյ 1037 թուին Սկովտիայի գահը բազմեցաւ Դունկան, այնչափ բարի և խաղաղասէր մի թագաւոր, որ նրան կոչում էին «տուրը կաթնապուր»։ Նորա այս բնաւորութիւնից օգուտ քաղելով՝ գաւառներն ապստամբեցան և դադարեցան հարկ վճարելուց։ Նոցա նուաճելու համար Դունկան իւր Բանկոյ զօրապետին նոցա դէմ ուղարկեց զօրքով. բայց ապստամբները, օգնութիւն գտնելով Կէրներից և Գա՛լ՛ոգ՛լէսներից [1]), մի ոմն Մակդոնա՛լ՛դի առաջնորդութեամբ՝ յաղթեցին Բանկոյին, որ վիրաւորուած յետ նահանջեց։ Բարեսիրտ թագաւորը մի երկրորդ բանակ ուղարկեց նոցա դէմ Մա՛լկո՛լմի առաջնորդութեամբ, որ նոյնպէս յաղթուեցաւ և գերի ընկնելով սպանուեցաւ։

Այս ժամանակ Մակբեթ, որ հօր կողմից Գ՛լամիսի թէն [1]) Սինէլի, իսկ մօր կողմից Մա՛լկո՛լմ Բ-ի դուստր Դոակի որդին էր, մի քաջ ու պատերազմասէր անձ՝ թագաւորից հրաման ստացաւ ապստամբներին դէմ գնալու. յաղթեց Մակդոնա՛լ՛դին, որ նորա ձեռքը չընկնելու համար ինքն իրան սպանեց։ Երկրորդ անգամ Մակբեթ դէմ ելաւ սկանդինաւցի հէններին, որոնց առաջնորդում էր Նորվէգիայի Սվէնոն թագաւորը։ Սոցա ևս յաղթեց և ազատեց Դունկանին, որ արդէն պաշարուած էր նոցանից։ Երրորդ և ամենանշանաւոր յաղթութիւնը նա տարաւ Մեծն Կանուտի դէմ, որ կամենալով Սվէնոնի պարտութեան վրէժն առնել՝ չորս ազգերի գլուխն անցած Սկովտիա յարձակեցաւ։ Ամենուրեք տարածուած ահ ու սար-

1) Այս բառերի բացատրութիւնը տես բնագրում, ծանօթութիւնների մէջ, եր. 5, 6։

սափի մէջ՝ միայն Մակբեթ արիաբար զօրք պատրաստեց և Կանուտին այնպէս յաղթեց, որ սա իւր մեռելներին թաղելու իրաւունքը փողով գնեց նորանից։

Այս յաղթութիւններից յետոյ մի տարօրինակ փորձութիւն պատահեցաւ Մակբեթին։

«Մի օր, ասում է Հոլինշէտ ժամանակագիրը, Մակբեթ և Բանկոյ միասին վերադառնում էին Ֆօրս, որտեղ գտնւում էր թագաւորը։ Երբ անցնում էին նոքա դաշտերի և անտառների միջով՝ յանկարծակի հանդիպեցան երեք կների ծիծաղական և վայրենի հագուստներով, որոնք թւում էին մի նախկին աշխարհի բնակիչներ։ Երբ նոքա նէրանց զննում էին ուշադրութեամբ՝ նէրանցից առաջինը խօսեցաւ և ասաց. «Ողջոյն, Մակբեթ, թէն Գլամիսի». (և յիրաւի Մակբեթ նոյն ժամանակներն ստացել էր այս տիտղոսը, իւր հօր մեռնելուց յետոյ)։ Երկրորդն ասաց. «Ողջոյն, Մակբեթ, թէն Կաւդորի»։ Երրորդը՝ «Ողջոյն, Մակբեթ, որ թագաւոր պիտի լինիս Սկովտիայի»։

«Ի՞նչ տեսակ կներ էք դուք, գոչեց Բանկոյ, դուք, որ դէպի ինձ այդքան անբարեգուշակ էք, մինչդեռ իմ ընկերիս բացի բոլոր պատիւներից՝ թագաւորութիւն էլ խոստացաք»։

Ինչո՞ւ չէ, պատասխանեց առաջինը. քեզ խոստանում ենք աւելի մեծ բարիք քան նորան. վասն զի նա դժբախտ վախճան պիտի ունենայ և յաջորդներ չպիտի թողնէ իւր գահին. իսկ քեզանից պիտի ծնին իշխաններ, որ երկար ժամանակ և ուղիղ գծով պիտի թագաւորեն Սկովտիայի վերայ»։

«Այս ասելով՝ նէրանք անհետացան, շարունակում է Հոլինշէտ։ Մակբեթ և Բանկոյ այս երևոյթն սկզբում համարում էին ցնորական ու սնոտի մի տեսիլ, և միայն ծաղրի համար կոչում էին միմեանց Սկովտիայի թագաւոր կամ թագաւորահայր։ Բայց յետոյ բոլոր ժողովրդին մէջ ընդհանուր կարծիք դարձաւ, թէ այն կները ճակատագրի քոյրերն էին, կամ գիւցուհիներ ու յաւէրժահարսներ, որ մեռելահարցութեամբ (nécromancie) ապագան գուշակելու գիտութիւնն ունէին, որովհետև ինչ որ նէրանք ասացին՝ բոլորը կատարուեցաւ։ Եւ

յիրաւի, փոքր ինչ ժամանակից յետոյ Կաւդորի թէնը դաւաճանութեան պատճառով մահի դատապարտուեցաւ, և նորա ստացուածքներն ու աստիճանը թագաւորն առատաձեռնեց Մակբեթին։ Միևնոյն երեկոյին, ընթրիքի ժամանակ, Բանկոյ ծաղրածութեամբ Մակբեթին ասաց. «Է՜հ, Մակբեթ, դու արդէն ստացար՝ ինչ որ առաջին երկու քոյրերը քեզ խոստացան. մնաց միայն այն, ինչ որ երրորդը գուշակեց»։

«Սորա վերայ Մակբեթ սկսեց մտածել, թէ ինչպէս կարող է ձեռք ձգել թագաւորութիւնը. բայց առ ժամանակ թողեց, որ նոյն ինքը ժամանակը բարձրացնէ իրան մինչև այն աստիճանը, ինչպէս հասցրել էր իւր ներկայ աստիճանին։ Բայց մի փոքր միջոց անցնելուց յետոյ Դունկան թագաւորը, որ երկու որդի ունէր իւր կնից, որ Նորթումբերլ՚անդի կոմս Սիվարդի դուստրն էր՝ իւր անդրանիկ որդուն Մալ՚կոլ՚մին Կումբերլ՚անդի իշխանի տիտղոսը շնորհեց, սորանով նրան յաջորդ նշանակելով իրան՝ անմիջապէս իւր մահից յետոյ։ Մակբեթ սորա վերայ սաստիկ յուզուեցաւ, որովհետև սորանով իւր յոյսն ի դերև էր ելնում. ուստի սկսեց մտածել, թէ ինչ կերպով բռնի ձեռք բերէ թագաւորութիւնը։ Ճակատագրի երեք քոյրերի խօսքերը նրան շատ քաջալերում էին և մանաւանդ նորա կինը, որ սաստիկ փառասէր լինելով և թագուհի կոչուելու ցանկութեամբ վառուած՝ նրան անդադար յորդորում և թախանձում էր, գրգռելով նորա սէրն ու փառասիրութիւնը և պատմելով Դոնվալ՚դ թէնի վրէժխնդրութեան անցքը 965-ին, թէ ինչպէս նա թագաւորին հրաւիրեց իւր ամրոցն և այնտեղ նրան սպանեց իւր ծառաներին ձեռքով և յետոյ նորա սպասաւորներին ինքն սպանեց իբրև յանցաւորների։ Նոյնպէս անել խորհուրդ էր տալիս լէդի Մակբեթ իւր ամուսնին և կշտամբում էր նրան, թէ նա թուլասիրտ է և անփոյթ փառքի և պատուի, չէ համարձակւում արութեամբ և քաջութեամբ դիմաւորել այն փառքին, որ բախտը խոստացել է նորան շնորհել. մինչդեռ ուրիշներն իրանց աւելի մեծ փորձանքների կենթարկէին՝ նուազ յաջողութեան համար»։

Վերջապէս թէնը համաձայնում է։ «Նա հաղորդեց,

ասում է Հոլինշէտ, իւր դիտաւորութիւնը հաւատարիմ բարեկամներին, որոնց մէջ գլխաւորն էր Բանկոյ, և նոցանից օգնականութեան խոստում ստանալով՝ Դունկան թագաւորին սպանեց Ինվէրնէսում, կամ ինչպէս ուրիշներն ասում են՝ Բոտգօսվէնում. յետոյ իւր ոճրակիցների օգնութեամբ թագաւոր կոչուեցաւ և Սկօն ուղևորուելով արքայական հանդերձ զգեցաւ»։

Ոճրագործութեամբ թագաւոր դառնալով՝ նա գիշեր ցերեկ մտածում է իւր գահն ապահովել. ուստի շատ նեղում է թէներին, խլում է նոցանից մեծամեծ արտօնութիւններ և իրաւունքներ, և խոնարհ ծառայ է դառնում հոգևորականութեան, ուստի և Հռոմ գնալով՝ օրհնութիւն է ստանում Լևոն Թ. պապից և վերադառնալով աշխատում է եկեղեցու օգտին։

«Սակայն երեք· քոյրերի խօսքերը, որոնք իրան թագաւորութիւն խոստանալիս, նոյնը խոստացան նաև Բանկոյի սերունդին՝ նրան մտատանջում էին։ Ուստի նա Բանկոյին և նորա Ֆլինս որդուն երեկոյեան ժամանակ իւր մօտ կոչունքի հրաւիրեց, միևնոյն ժամանակ մի քանի մարդասպաններ վարձեց՝ որ պալատից փոքր ինչ հեռու յարձակուին և սպանեն Բանկոյին և որդուն, երբ նոքա կոչունքի լինին գալիս։ Այս կերպով նա յոյս ունէր իւր վերայից հեռացնել որևէ կասկած նոցա սպանութեան գործում։

«Բայց պատահեցաւ այնպէս, որ միայն Բանկոյ սպանուեցաւ, իսկ Ֆլինս մթութիւնից օգտուելով խոյս տուեց վտանգից։ Յետոյ Ֆլինս իւր բարեկամներից գաղտնապէս տեղեկութիւն ստացաւ, թէ իւր կեանքը վտանգի մէջ է, և թէ յարձակումը որ եղաւ իւր և հօրը վերայ՝ պատահական բան չէր, այլ կազմակերպուած որոգայթ. ուստի նա փախաւ Գալ՚լերի երկիրն»։

Բանկոյի մահից յետոյ Մակբեթ ինքնիրան ամենազօր է կարծում Սկովտիայում. և յիրաւի, թէները, ժողովուրդը և ռամիկը դողում են նորանից և հալածում են նորան, մանաւանդ հոգևորականութիւնը, որ նորա անունն հնչեցնում էր եկեղեցիներում։ Միայն մէկ մարդ, Մակդուֆ, Ֆայֆի թէնը,

չէ նմանում միւս թէներին և արհամարհելով չէ գալիս Մակբեթի հրաւէրներին. այլ փակուած իւր բնակարանում՝ միայնակ և տխուր կեանք է անց կացնում իւր կնի և որդիների հետ։ Մակբեթ դժկամակում է նորա այս բարձրայօնութեան վերայ և սկսում է գաղտնի լրտեսների և ոստիկանների միջոցով գիտել նորա բոլոր ընթացքն ու գործերը։

«Մի քանի կախարդ կներ, որոնց Մակբեթ մեծ հաւատ էր ընծայում, մանաւանդ երեք քոյրերի գուշակութեան կատարուելուց յետոյ՝ նրան զգուշացրել էին, թէ Մակդուֆ ժամանակով պիտի ջանայ նրան կործանել։ Նա իսկոյն ևեթ սպանել կտար Մակդուֆին՝ եթէ մի ուրիշ կախարդ կին, որին նոյնպէս շատ հաւատում էր՝ նորան ասած չլինէր, թէ նա երբէք չի սպանուի որևէ մարդից՝ որ կնից ծնուած է, և թէ չի յաղթուի՝ մինչև Բէրնամի անտառը Դունսինան ամրոցին դէմ չշարժուի։

«Այս գուշակութիւններով ապահովուած, թէ ոչ ոք իբան չպիտի սպանէ կամ յաղթէ՝ Մակբեթ սկսում է մեծ խըստասրտութիւններ անել և ճնշել իւր հպատակներին։ Մակդուֆ խոյս տալով իւր կեանքին սպառնացող վտանգից՝ որոշում է փախչել Անգլիա, որ համոզէ օրինաւոր թագաժառանգ Մալ՛կոլ՛մին՝ պահանջել Սկովտիայի թագը։ Այս գործի նախագիծը ծածուկ չէ մնում Մակբեթից, որ իւրաքանչիւր տան մէջ վարձկան լրտեսներ ունենալով՝ ամեն բան իմանում էր. վասն զի թագաւորները, ինչպէս ասում են՝ Սֆինքսի նըման խորագնին աչքեր ունին և Միդասի նման երկայն ականջներ—ամեն բան տեսնելու, ամեն բան լսելու համար։

«Լրտեսներից իմանալով Մակդուֆի փախչելու ժամանակը՝ Մակբեթ մեծ զօրութեամբ յարձակւում է Ֆայվի կոմսութեան երկիրը, պաշարում է Մակդուֆի ամրոցը, յուսալով նրան այնտեղ գտնել։ Պահապաններն իսկոյն բաց են անում դռները. Նա սպանել է տալիս Մակդուֆի կնին և որդիներին և առ հասարակ ամենին, որ եղել են ամրոցում։ Մակդուֆին դաւաճան է հրատարկում և գրաւում է բոլոր նորա գոյքը։ Իսկ Մակդուֆ վտանգից ազատուելով՝ փախչում է

Անգլիա Մա՛լկո՛լմ Կամմորի մօտ, որպէսզի նորանից օգնութիւն գտնէ և այն արիւնարբու սպանչից առնէ իւր կնի, որդիների և բարեկամների վրէժը։

Այս Մա՛լկո՛լմ Կամմորը Դունկանի անդրանիկ որդին էր, որ իւր հօր սպանութեան ժամանակ փախել էր Անգլիա և ապաստանարան էր գտել Եդուարդ Խոստովանողի մօտ, մի սուրբ թագաւորի, որ ժամանակագրի վկայութեամբ գուշակութեան հոգի ունէր և հիւանդութիւններ բժշկելու շնորհք։ Այստեղ ահա Մակդուֆ գտնում է Մա՛լկո՛լմին, և ոգևորուած իւր ընտանիքի վրէժխնդրութեան ու հայրենիքի ազատութեան նպատակներով՝ սկսում է նկարագրել երիտասարդ գահաժառանգին Սկովտիայի աղէտները, և սաստիկ թախանձում է նրան, որ վերջ դնէ այն տանջանքներին, հրատարակելով՝ թէ Մակբեթ կորցրել է թագը։

«Մա՛լկո՛լմ պատճառանքներով հրաժարում է թագաւոր լինելուց. պատմում է մի առակ, թէ մի աղուէս շատ նեղուելիս է եղել շանաճանճներից, որոնք ծծում էին նորա արիւնը։ Մի ճանապարհորդ, տեսնելով նորա տանջանքը՝ նորան առաջարկում է վանել ճանճերին։ «Ո՛չ, պատասխանում է աղուէսը. որովհետև եթէ հալածուէին այս կերած լիացած ճանճերը, որոնք չեն կարող խիստ անյագաբար ծծել՝ վերաս կթափին քաղցած ու դատարկները, բոլոր մնացած արիւնս կծծեն և աւելի ցաւ կպատճառեն»։ Սորանով Մա՛լկո՛լմ կամենում է յայտնել, թէ ինքն աւելի ցանկասէր, ագահ և ընչաքաղց լինելով՝ Մակբեթից յետոյ աւելի վնասակար կլինէր Սկովտիային, քան նա։ Սակայն այս խօսքերով նա միայն փորձել էր ուզում Մակդուֆին, թէ արդեօք նա Մակբեթի կողմից յուղարկուած չէ իրան որսալու։ Երբ համոզւում է, թէ ոչ՝ համբուրւում են և հաւատարմութեան երդում են տալիս միմեանց։

Ապստամբութիւնը ծագում է։ Մակդուֆ և Մա՛լկո՛լմ յայտնում են իրանց նախադիծը բարեպաշտ Եդուարդ թագաւորին, որ նոցա օգնութեան է տալիս իւր լաւագոյն գունդերը և Սիվարդ զօրապետը։ Ազատարար բանակը մտնում է

Սկովտիա, հրատարակելով Մակբեթին գահազուրկ եղած և Մալ՛կոլ՛մին թագաւոր։ Առանց սուր շարժելու բանակն անցնում է գաւառներ ու նահանգներ։ Մակբեթ ամրանում է Դունսինեան ամրոցում և, չնայելով որ թէները նրան ձգում հեռանում էին՝ ծաղր անելով սպասում է ապստամբներին։ Նա այնչափ հաւատում էր գուշակութիւններին, որ կարծում էր, թէ երբէք չի յաղթուի, մինչև Բէրնամի անտառը Դունսինեան չգայ, և չի սպանուի կնից ծնուած մարդից։

«Մալ՛կոլ՛մ Մակբեթին հալածելով հասնում է մինչև Բէրնամի անտառը՝ կռուի նախընթաց օրը. և երբ իւր բանակը փոքր ինչ հանգստանում ու զովանում է՝ նա հրամայում է, որ իւրաքանչիւր զինուոր անտառից մի ճիւղ կտրէ, որպէսին կարող է տանել, և այսպէս առաջ գնան միասին, որպէս զի թշնամիներից չնկատուին։

«Երկրորդ օրը Մակբեթ նոցա տեսաւ այսպէս գալիս և զարմանքով ինքնիրան հարցրեց, թէ ինչ բան է իւր տեսածը։ Վերջապէս նա համոզուեցաւ, թէ սա Բէրնամի անտառն է, որ դէպի Դունսինեան է գալիս, և յիշեց գուշակութիւնը, որ կատարւում էր։ Այնու ամենայնիւ նա զօրքը արիութեամբ կարգի դրեց. բայցերբ թշնամիները ձգեցին ճիւղերը, և Մակբեթ տեսաւ նոցա բազմութիւնը՝ իսկոյն փախաւ։ Մակդուֆ վառուած մեծ ատելութեամբ ու վրէժխնդրութեամբ՝ նորա ետևից ընկած հալածում էր բաւական տեղ։ Վերջապէս Մակբեթ տեսնելով Մակդուֆին իւր ետևից հասնելիս՝ ձիուց վար թռաւ և գոչեց. «Դաւաճան, ինչո՞ւ ի զուր հալածում ես ինձ, ինձ, որին վիճակուած է չմեռնել կնից ծնուած մի արարածի ձեռքով. ո՛ն ուրեմն, ստացիր քո աշխատութեան հատուցումն»։ Այս խօսքերով թուրը բարձրացրեց և վերայ յարձակեցաւ։

«Մակդուֆ յանկարծակի շարժումով նորա հարուածից խուսափելով մերկ սուրը ձեռքին նորան պատասխանեց. «Դու ուղիղ ասացիր, Մակբեթ. հասել է ժամանակը, երբ քո անյագ կատաղութեանդ վերջ պէտք է տրուի. որովհետև ես հէնց այն մարդն եմ, որի մասին քո կախարդները քեզ խօսե-

ցան. ես մօրից չեմ ծնուած, այլ կտրուած հանուած եմ նէ-րա արգանդից դուրս»։ Եւ իսկոյն վերայ յարձակուելով նոյն տեղում նրան սպանեց, գլուխը կտրեց և փայտի վերայ անցկացրած բերեց Մա՛լկո՛լմին։

«Այսպէս եղաւ Մակբեթի վախճանը, որ թագաւորեց 17 տարի։ Իւր թագաւորութեան սկզբում նա շատ արժանաւոր և հասարակութեան օգտակար գործեր կատարեց. բայց յետոյ սատանայի որոգայթին մէջ ընկելով արատաւորեց իւր թագաւորութիւնն ամենատեսակի անգթութիւններով։ Նա սպանուեցաւ Քրիստոսի 1057 թուականին, Անգլիայի Եդուարդ թագաւորի ԺԶ. տարին»։



# ՄԱԿԲԵԹ

## ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ՀԻՆԳ ԱՐԱՐՈՒԱԾՈՎ

---

### Գործող անձերը·

*ԴՈՒՆԿԱՆ, Սկովտիայի թագաւորը։*

*ՄԱԼԿՈԼՄ*
*ԴՈՆԱԼԲԱՅՆ* — *Թագաւորի որդիները։*

*ՄԱԿԲԵԹ*
*ԲԱՆԿՈՅ* — *Թագաւորական բանակի զօրապետներ։*

*ԼԷՆՈԿՍ*
*ՄԱԿԴՈՒՖ*
*ՌՕՍՍ*
*ՄԷՆՏԷԹ*
*ԱՆԳՈՒՍ*
*ԿԷԹՆԷՍ* — *Սկովտիայի ազնուականներ։*

*ՖԼԻՆՍ, Բանկոյի որդին։*
*ՍԻՎԱՐԴ, անգլիական զօրքի զօրապետ, (Նորթումբեր-լանդի կոմս)։*
*ՍԻՎԱՐԴ ԿՐՏՍԵՐ, նորա որդին։*
*ՍԷՅՏՈՆ, Մակբեթի շքախմբից մի սպայ։*
*ՈՐԴԻՆ Մակդուֆի։*
*ԱՆԳԼԻԱՑԻ ԲԺԻՇԿ։ ՍԿՈՎՏԻԱՑԻ ԲԺԻՇԿ։ ՁԻՆՈՒՈՐ։*
*ԴՌՆԱՊԱՆ։ ԾԵՐՈՒՆԻ։*
*ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ։*

ԼԷԴԻ ՄԱԿԴՈՒՖ։
ՊԱԼԱՏԱԿԱՆ ԿԻՆ Լէդի Մակբեթի։
ՀԷԿԱՏԷ և ԵՐԵՔ ՎՀՈՒԿՆԵՐ։
ԼՈՐԴԵՐ, ԱԶՆՈՒԱԿԱՆՆԵՐ, ԶԻՆՈՒՈՐՆԵՐ, ՄԱՐԴԱՍՊԱՆՆԵՐ, ՊԱԼԱՏԱԿԱՆՆԵՐ, ՍՈՒՐՀԱՆԴԱԿՆԵՐ։
ԲԱՆԿՈՑԻ ՍՏՈՒԵՐՆ և ուրիշ ԵՐԵՒՈՅԹՆԵՐ։

---

Գործողութիւնը կատարւում է Սկովտիայում. իսկ Չորրորդ արարուածի վերջումը՝ Անգլիայում.

# ՄԱԿԲԵԹ

## ԱՌԱՋԻՆ ԱՐԱՐՈՒԱԾ



### ԱՌԱՋԻՆ ՏԵՍԱՐԱՆ

*Արձակ դաշտ։ Որոտում և կայծակ։* ԵՐԵՔ ՎՀՈՒԿ *ներս են մտնում։*

Ա. ՎՀՈՒԿ

*Ե՞րբ մենք երեքս միմեանց կրկին կըհանդիպենք,*
*Երբ որոտում, շանթ և անձրև՞ տեղալ երկինք։*

Բ. ՎՀՈՒԿ

*Երբ լռէ աղմուկը պատերազմի,*
*Յաղթութիւն, կորուստ երբ լինին յայտնի։*

Գ. ՎՀՈՒԿ

*Սա արևմըտից առաջ կը լինի։*

Ա. ՎՀՈՒԿ

*Ո՞րտեղ ժողովուինք։*

Բ. ՎՀՈՒԿ

*Ծըմակի մէջին։*

Գ. ՎՀՈՒԿ

Մենք պէտք է այնտեղ գտնենք Մակբեթին։

Ա. ՎՀՈՒԿ

Գալիս եմ, մըռուան կատու [1]։

ԱՄԵՆՔԸ

Կանչում է գօգօշն [2]։ Իսկո՛յն։—
Բարին է չար, չարն է բարի.
Շըրջինք մէջ մէգ ու խաւարի։ (Անհետանում են)։

---

## ԵՐԿՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Ֆօրսի մօտ բանակատեղ։ Տեսարանի ետև կռուի աղաղակ։ ԴՈՒՆԿԱՆ ԹԱԳԱՒՈՐԸ, ՄԱԼ'ԿՈԼ'Մ, ԴՈՆԱԼԲԱՑՆ, ԼԷՆՈԿՍ և ՇՔԱԽՈՒՄԲԸ ներս են մտնում և հանդիպում են մի վիրաւորուած ԶԻՆՈՒՈՐԻ։

ԴՈՒՆԿԱՆ

Ո՞վ է այդ արիւնթաթախ մարդը. անշուշտ դա բերում է,
Նայելով իւր վէրքերին՝ ապստամբութեան ելքի մասին
Ամենանոր լուրեր։

ՄԱԼ'ԿՈԼ'Մ

Սա այն զինապետն է, որ իբրև
Հաւատարիմ և քաջ զինուոր կռուեցաւ և ինձ փրկեց
Գերութիւնից։—Ողջո՛յն քեզ, արիասիրտ բարեկամ.
Պատմիր թագաւորին՝ պատերազմից ինչ որ գիտես
Ի՞նչ դըրութեան մէջ թողիր այն։

ԶԻՆՈՒՈՐ

Անորոշ էր նա դեռ ևս
Ինչպէս երկու դադրած լողորդ, որոնք միմեանց կաշկանդելով
Դերև հանում են արուեստը։ Խըստասիրտ Մակդոնալ՚դը—
(Նա արժանի է ապըստամբ կոչուելու, որովհետև

---

1) Բնագրում՝ գըրայմալկին. 2) Բնագրում՝ պադդոկ։ Մեկնիչների կարծիքով սոքա կատուի և գօգօշի ընտանի կոչումներ են։

Նորա շուրջը խըմբուած են բնութեան զազիր արատները
Ջոկերներ այս պաշտօնով)—արեւմըտեան կղզիներից,
Գալ՛լոգլէսի և Գերների [1] կողմից գըտաւ պաշտպանութիւն։
Նոյն իսկ բախտը ժըպտելով այս անիծեալ պատերազմին՝
Ապըստամբի բոզը լինէր կարծես։ Բայց զուր այս ամենն.
Որովհետեւ քաջըն Մակբեթ—նա արժանի է այս կոչման—
Ծաղրելով բախտին վերայ, պողովատիկը մերկացրած,
Որ ծըխում էր նորա գործած արիւնաուշտ նախճիրներից,
Արութեան սիրելին—նա ճանապարհ բացեց, մինչեւ
Այն ըստրուկին մօտ հասաւ։
Չըսեղմեց նորա ձեռքը, «գընաս բարով» չասաց նորան՝
Մինչեւ նըրան չըձեւեց կառափից մինչեւ կըզակն
Եւ գլուխը չըխարըսխեց մեր պարըսպի բուրգին վերայ։

ԴՈՒՆԿԱՆ

Ո՜վ քաջ եղբօրորդիս, արժանաւոր ազնուական։

ՁԻՆՈՒՈՐ

Բայց ինչպէս այնտեղից, ուր ծագում է արեգակն,
Նաւակործան փոթորիկ ու՛ ահեղ որոտ է փըրթում՝
Այսպէս եւ այն աղբիւրից, որ փըրկութիւն էր խոստանում՝
Մեզ չարիք բըղխեց։ Լըսիր, Սկովտիոյ արքայ, լըսիր։
Դեռ հազիւ արդարութիւնն, արիութեամբ զըրահաւորուած,
Արագավազ Գերներին ըստիպեց կըռնակ դարձնել՝
Նորվեգիոյ իշխանն ահա, կըշռելով յաջողութիւնն՝
Մերկացրած զէնքերով ու նոր կազմած զօրախըմբով
Նորից կըռիւ ըսկըսեց։

ԴՈՒՆԿԱՆ

Զահաբեկեց արդեօք սա
Մեր աւագ զօրագլուխ Մակբեթին և Բանկոյին։

ՁԻՆՈՒՈՐ

Այո՛, ինչպէս ճընճղուկն արծուին և նապաստակն առիւծին։

---

1) Իռլ՛անդական փոքրիկ ցեղերի անուններ են։ Գերն կոչւում էր հետեակ, թեթեւ զրահաւորուած զօրքը, որ կռւում էր տապարներ. իսկ Գալ՛լոգլէս կոչւում էր ծանր զրահաւորուած պահեստի զօրքը։

Ճըշմարիտն ասելով՝ ինձ յիրաւի նոքա թուեցան
Թընդանօթներ, կըրկնակի լըցուած մանր փամփուշտներով [1])—
Կըրկնապատիկ հարուածներ էին կըշռում թըշնամուն։
Արդեօք ծըխող վէրքերին մէջ լողանա՛լ էին ուզում
Նոքա, կամ թէ հանդիսացնել մի երկրորդ Գողգոթա՝
Այդ չըգիտեմ։
Բայց դադրած եմ ես, և վէրքս օգնութիւն է պահանջում։

ԴՈՒՆԿԱՆ

Քեզ յարմար են գալիս ինչպէս խօսքերն, այնպէս և վէրքն—
Պատուի նըշան ունին նոքա.—Բըժիշկներ տըւէք նորան։

*Ներս է մտնում՝ ՌՕՍՍ։*

Ո՞վ է գալիս այստեղ։

ՄԱԼԿՈԼՄ

Ռօսսի արժանաւոր թէնն [2]) է սա։

ԼԷՆՈԿՍ

Ո՜րպիսի ըշտապ նորա աչքերին մէջ է նըկատւում,
Ինչպէս մէկն, որ ուզում է զարմանալի լըրեր պատմել։

ՌՕՍՍ

Ողջո՜յն թագաւորին։

ԴՈՒՆԿԱՆ

Ո՞ւսկից գալիս ես, ազնիւ թէն։

ՌՕՍՍ

Ֆայֆից եմ, մեծ թագաւոր,
Ուր օդի մէջ ծածանուելով Նորվեգիոյ դրօշակներն՝
Ծաւալում էին մեր ժողովըրդին վրայ զովութիւն.
Իսկ ինքը Նորվեգացին իւր անհամար զօրքերով
Եւ օգնութիւն գըտնելով այն անօրէն ապըստամբից—

---

1) Գործողութիւնը կատարւում է ԺԱ. դարում, ուրեմն ոչ թնդանօթներ կարող էին լինել և ոչ փամփուշտներ։ Ժամանակագրական այսպիսի անճշտութիւններ Շէկսպիրի մէջ պակաս չեն։
2) Թէն—բարոն։

Կաւդորի Թէնից՝—ահեղ մի պատերազմ ըսկըսեց.
Մինչև նա, Բէլ՛լոնայի փեսան [1]), հագած զըրահներ՝
Նորան հանդէպ դուրս եկաւ՝ իւր զօրութիւնը կըշռելու։
Սուր՝ սըրի և իւր ձեռքն այն ապըստամբ ձեռքին դէմ՝
Նըւաճեց զոռոզացած նորա հոգին։ Կարճն ասեմ—
Մեզ մընաց յաղթութիւնը։

ԴՈՒՆԿԱՆ

Ո՜վ մեծ բախտ։

ՌՕՍՍ

Եւ հիմայ
Նորվեգիոյ Թագաւորն Սվենոն խընդրում է հաշտութիւն։
Իսկ մենք նորան թոյլ չըտըւինք թաղել իւր մեռելներին՝
Մինչև Սուրբ Կոլ՛մբանի կըղզուն վերայ նա չըհամրեց
Մեր առջև տասն հազար դոլ՛լար յօգուտ հասարակաց։

ԴՈՒՆԿԱՆ

Կաւդորի այն Թէնն այլ ևս թող չըլուզէ մեր ներքին
Խաղաղութիւնն։ Գընա, յայտնիր նորա մահի վճիռը,
Եւ Մակբեթին շնորհաւորիր իւր տիտղոսը նոր Թէնի։

ՌՕՍՍ

Կըկատարեմ իսկոյն։

ԴՈՒՆԿԱՆ

Նորա կորցրածը թող գըտնէ Մակբեթ։
(Գնում են)։

---

## ԵՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Դաշտ։ Որոտում և կայծակ։—ԵՐԵՔ ՎՀՈՒԿՆԵՐԸ ներս են մտնում։

Ա. ՎՀՈՒԿ

Ո՞րտեղ էիր, քոյր։

---

1) Բէլ՛լոնայի փեսան=Մակբեթ։

Բ. ՎՀՈՒԿ

Խօզ էի մորթում։

Գ. ՎՀՈՒԿ

Իսկ դու ո՞րտեղ, քոյր։

Ա. ՎՀՈՒԿ

Մի նաւաստու կին գօգնոցը կաշին լցրած ուտում էր,
Ուտում էր, ուտում։ «Տուր ինձ», ասացի.
«Կորի՛ր, չար վհուկ», գոչեց հաստ քաւթարն։
Նրա մարդն Հալէպ գնաց, նաւապետ «Տիգրիս» վերայ։
Մաղով նորան կըհասնիմ ես
Պոչը կտրած գաշտամկի պէս։
Կանեմ, կանեմ, կանեմ այս ես։

Բ. ՎՀՈՒԿ

Քեզ տալիս եմ մի քամի։

Ա. ՎՀՈՒԿ

Շատ բարի։

Գ. ՎՀՈՒԿ

Մէկ ուրիշն էլ ինձնից կառնես։

Ա. ՎՀՈՒԿ

Մընացածներն էլ ունիմ ես։
Գիտեմ նոքա ո՞ւր են շրնչում։
Նաւապետի ես քարտէսում
Բոլոր կէտերն բերան գիտեմ։
Նրան խոտի պէս կըչորացնեմ։
Դադրած աչքերն օր ու գիշեր
Քուն չըտեսնեն հանգըստաբեր։
Ինն անգամ ինն շաբաթ բոլոր
Թող թափառի խեղճ ու մոլոր.
Եւ եթէ նաւը չընկըղմի՝
Թող հողմերին դառնայ գերի։—
Տես ինչ ունիմ։

*Բ. ՎՀՈՒԿ*

Ցույց տուր ինձ։

*Ա. ՎՀՈՒԿ*

Սա է բուժ մասն այն նաւուղղի,
Որ երբ դառնում էր հայրենիք՝
Նաւը փշրեց ահեղ մրրիկ։ (*Տնասարանի ետևը թմբկի ձայն*)։

*Ա. ՎՀՈՒԿ*

Ա՜, թմբկի ձայն.—
Մակբեթ է այն։

*ԱՄԵՆՔԸ*

Օրհասի քույրեր, ճն, ձեռք ձեռքի տանք,
Ծով ու ցամաքի վերայ սլանանք.
Պտտույտ անենք ման ու ման.
Քոնդ երեք անգամ, իմս երեք անգամ,
Եւ դարձեալ երեք՝ կանէ ինն անգամ։—
Կացէք, պատրաստ է հըման։
(*ՄԱԿԲԵԹ և ԲԱՆԿՈՑ ներս են մտնում*)։

*ՄԱԿԲԵԹ*

Այսպէս տըխուր և գեղեցիկ օր չեմ տեսել ես երբէք։

*ԲԱՆԿՈՑ*

Ո՛րչափ դեռ կայ մինչև Ֆօրս—Բայց ո՞վ են դոքա արդեօք,
Այդպէս վըտիտ, չորացած և վայրենի դէմքերով։
Նըմանութիւն չունին դոքա աշխարհի բնակիչներին,
Բայց կանգնած են երկրի վըրայ։—Ապրո՞ւմ էք դուք, էք դուք մի ինչ,
Որին մարդ հարցում անէ։ Դուք ինձ կարծեմ հասկանում էք.
Որովհետև ամենդ խւկոյն ձեր կոշտացած մատները
Դըրիք կաշէ շըրթունքներիդ։ Դուք կինարմատ պէտի լինիք.
Բայց սակայն ձեր մօրուքներն ինձ արգելում են կարծել,
Թէ կին լինիք։

ՄԱԿԲԵԹ

Խօսեցէք, թէ կարող էք։ Ո՛վ էք դուք։

Ա. ՎՀՈՒԿ

Ողջո՛յն քեզ, Մակբեթ, ողջոյն քեզ, թէն Գլամիսի։

Բ. ՎՀՈՒԿ

Ողջո՛յն քեզ, Մակբեթ, ողջոյն քեզ, թէն Կաւդորի։

Գ. ՎՀՈՒԿ

Ողջո՛յն քեզ, Մակբեթ, որ թագաւոր պիտի լինիս։

ԲԱՆԿՈՑ

Ինչո՞ւ, տէր, դողում ես դու և սարսափում այս խօսքերից,
Որ այսքան քաղցր են հընչում։—Ճըշմարտութեան անունով,
Երևո՞յթ էք ցնորական, թէ լիրաւի այն էք դուք,
Ինչ որ դըրսից երևում էք։ Իմ ազնիւ բարեկամիս
Աւետեցիք դուք նոր բախտ, գուշակեցիք ապագայ
Փառաւոր մեծութիւն և յոյսեր արքայական,
Որոնցից նա թըրցնում է խելքը. իսկ ինձ ոչինչ չասիք։
Թէ կարող էք թափանցել ժամանակի սերմերին մէջ,
Եւ գիտէք, թէ ո՛ր սերմերն են աճելու և ո՛րոնք ոչ՝
Ասացէք ուրեմն ինձ, որ ո՛չ ձեր գութն եմ հայցում,
Ոչ վախենում չարութիւնից։

Ա. ՎՀՈՒԿ

Ողջո՛յն քեզ։

Բ. ՎՀՈՒԿ

Ողջո՛յն։

Գ. ՎՀՈՒԿ

Ողջո՛յն։

Ա. ՎՀՈՒԿ

Մակբեթից դու կըրտսեր, և սակայն աւելի մեծ։

Բ. ՎՀՈՒԿ

Ոչ բախտաւոր նորա չափ, բայց աւելի բախտաւոր։

Գ. ՎՀՈՒԿ

Թագաւորներ կըծընիս, բայց թագաւոր չես լինի

Դու՛ երբէք։ Ողջո՜յն ուրեմըն ձեզ, Մակբեթ և Բանկօյ։

*Ա. ՎՀՈՒԿ*

Ողջո՜յն ձեզ, ո՜վ Մակբեթ և Բանկօյ։

*ՄԱԿԲԵԹ*

Ըսպասեցէք,
Դուք, թերի գուշակներ. ինձ աւելի պատմեցէք։
Սինելի [1]) մահով, գիտեմ, ես թէն եղայ Գլ՛ամիսի.
Բայց ինչպէս և Կաւդորի։ Կաւդորի թէնն ապրում է դեռ,
Մի բախտաւոր ազնուական։ Իսկ թագաւոր լինելը
Նոյնչափ դուրս է իմ հաւատի շրջանից՝ որչափ նաև
Կաւդոր դառնալս։ Ասացէք, վաղո՞ւց էք դուք ըստանձնել
Տարօրինակ այս արուեստ, և ինչո՞ւ էք խափանում
Մեր ճանապարհն այս ամայի դաշտին մէջ, այդպիսի
Գուշակական ողջոյններով։ Խօսեցէք, հրամայում եմ։

*(Վհուկներն աներեւութանում են)։*

*ԲԱՆԿՈՅ*

Երկիրն ունի պղպջակներ, ինչպէս ունի նոյնն և ջուրը։
Սոցա նըման են և նէրանք. բայց ո՞ւր նէրանք անհետացան։

*ՄԱԿԲԵԹ*

Օդին մէջ։ Մարմնաւոր նէրանց տեսիլը հալեցաւ՝
Ինչպէս մի շունչ հողմին մէջ։ Բայց ո՛ւր էր, թէ մընային։

*ԲԱՆԿՈՅ*

Եւ լիրաւի կային նէրանք այստեղ, որոնց վրայ խօսում ենք,
Թէ մենք էլ ճաշակեցինք այն թունաւոր արմատից,
Որը մեր դատողութիւնը գերութեան մէջ է պահում։

*ՄԱԿԲԵԹ*

Ձեր որդիները թագաւոր կըլինին։

---

1) Սինել՝ Մակբեթի հայրն էր և Գլ՛ամիսի թէնը, որի մահուանից յետոյ թէնութիւնն անցել էր Մակբեթին։ Իսկ Կաւդորի թէն Մակբեթ կարող էր լինել միայն այն ժամանակ՝ եթէ թագաւորն այս թէնին զրկէր նորա տիտղոսից և իշխանութիւնից և պարգևէր Մակբեթին։

ԲԱՆԿՈՅ

Դուք՝ թագաւոր։

ՄԱԿԲԵԹ

Նոյնպէս և Կաւդորի թէն, այնպէս չէ՞ր նէրանց խօսքը։

ԲԱՆԿՈՅ

Միևնոյն ձայնով և նոյն բառերով։—Ո՞վ է գալիս։

*ՌՕՍՍ եւ ԱՆԳՈՒՍ ներս են մտնում:*

ՌՕՍՍ

Թագաւորն ուրախութեամբ տեղեկացաւ, ո՛վ Մակբեթ,
Քո յաղթութեան լուրերին։ Երբ նա կարդաց անձնական
Քաջութիւններդ, որ ցոյց տուիր ապստամբների դէմ կռուելիս՝
Իւր մէջ մրցել սկսան լուռ հիացումն ու գովասանքն,
Թէ ինչ է քեզ արժան և ինչ իրան։ Այսպէս լռած.
Երբ ուշադիր եղաւ նա օրուայ միւս դիպուածներին՝
Նա քե՛զ գտաւ Նորվեգիոյ ամրակազմ գնդերին մէջ
Աներկիւղ կանգնած, մահի ահաւոր տեսիլին դէմ,
Որ դու ինքնին ստեղծեցիր։ Ինչպէս խօսքի շարքերը՝
Գալիս էին սուրհանդակ սուրհանդակի վրայ, և ամենքն
Իւր տէրութիւնն պաշտպանելու համար գործած արութիւններդ
Բերում էին բարդ-բարդում նորա առաջ։

ԱՆԳՈՒՍ

Մենք ղրկուած ենք
Արքայական մեծութեան շնորհակալիքն յայտնելու քեզ.
Քեզ նորան ներկայացնել պէտք ենք, և ոչ վարձատրել։

ՌՕՍՍ

Եւ իբրև գրաւական մեծագոյն ուրիշ պատուի՝
Ինձ հրամայեց քեզ ողջունել իբրև թէն Կաւդորի։
Ողջո՛յն քեզ այս տիտղոսով, ազնիւ թէն, որովհետև
Քոնն է այն։

ԲԱՆԿՈՅ

Ինչ, դևն էլ ճշմարտութիւն է խօսում։

ՄԱԿԲԵԹ

Կաւդորի թէնն ապրում է դեռ. ինչո՞ւ էք ինձ ըզգեցնում

Փոխ առնըւած հանդերձներ։

*ԱՆԳՈՒՍ*

Նա որ թէն էր՝ դեռ ապրում է.
Բայց ծանըր դատաստանի տակ հեծում է նորա կեանքն,
Որին նա չէ արժանի։ Արդեօք նա կապակցութիւն
Նորվէգիոյ հետ ունէր, կամ գաղտնի պաշտպանութեամբ
Եւ օգնութեամբ զօրացնում էր ապստամբներին, կամ այս երկու
Միջոցներով երկրի կորուստն էր նիւթում՝ ես չը գիտեմ.
Բայց հաստատուած խոստովանուած նորա դաւն պետութեան
դէմ
Նըրան անդունդ գըլորեց։

*ՄԱԿԲԵԹ (առանձին)*

Գլամիս և Կաւդորի թէն։
Մեծագոյնը դեռ պիտի գայ։ *(Անգուսին եւ Ռօսսին)* Շնոր-
հակալ եմ ձեր ջանքին։
*(Բանկոյին)* Դու չե՞ս յուսար այժմ, որ քեզնից թագաւորներ
կըծընին.
Վասըն զի նէրանք, որ ինձ Կաւդորի թէն կոչեցին՝
Ոչինչ պակաս քեզ խոստացան։

*ԲԱՆԿՈՅ*

Եթէ սորան հաւատաս՝
Կարող է սա քո սըրտում թագի սէրը բորբոքել,
Թէև արդէն Կաւդորի թէն դու լինիս։ Զարմանք բան է,
Եւ յաճախ դէպի կորուստ մեզ որսալու նըպատակով՝
Ճըշմարտութիւն են խօսում մեզ դըժոխքի գործիքներն,
Հրապուրում են ազնիւ, չընչին բաներով և կործանում
Հետևանքի անդունդին մէջ։ — Ընկերներ, խընդրեմ մի խօսք։
*(Մի կողմ է քաշում Ռօսսի եւ Անգուսի հետ։*

*ՄԱԿԲԵԹ*

Երկու խօսքը ճըշմարտուած արդէն տեսնում եմ բացորոշ,
Իբրև յաջող նախերգանք մի փառաւոր թատերերգութեան,
Արքայական վախճանով։ *(Ռօսսին եւ Անգուսին)* Շնորհակալ
եմ, պարոններ։ —

*(Առանձին)* Այս գերբնական գուշակէչ միջամտութիւնը չէ կարող
Վատ լինել, չէ կարող և լաւ լինել։ Եթէ վատ է՝
Ինչու՞ ուրեմն հետևանքի գրաւականն ինձ տուեց,
Ճշմարտութեամբ ըսկսելով.— ահա թէն եմ ես Կաւդորի։
Եթէ լաւ՝ ինչու՞ ինձ հրապուրում է այն նախագիծն,
Որի ահեղ պատկերին դէմ ցից-ցից տընկւում են մազերս,
Եւ այսպէս բաբախում է կողերիս մէջ սիրտս ուժգին,
Որ առաջ այնքան ամուր էր։ Իրական մեր երկիւղն
Աւելի թոյլ է լինում, քան երկիւղի մըտապատկերն։
Իմ խորհուրդս ըսպանութեան մասին, թէպէտ լոկ մի ցընորք՝
Այրութիւնս այն աստիճան է դըրդուեցնում, որ իմ բոլոր
Կենսական ոյժս երազների մէջ է մաշւում, և ոչինչ
Չըկայ բացի ոչընչից։

*ԲԱՆԿՈՅ*

Տես խընդութիւնն մեր ընկերի։

*ՄԱԿԲԵԹ (առանձին)*

Եթէ բախտն ուզում է ինձ պըսակ դընել՝ թող պըսակէ
Առանց իմ միջամտութեան։

*ԲԱՆԿՈՅ*

Նոր պատիւն յարմարւում է
Նորան այնպէս, ինչպէս հանդերձն, որ միայն գործածութեամբ
Կընըստի մարմնին վերայ։

*ՄԱԿԲԵԹ (առանձին)*

Ինչ որ գալու է՝ թող գայ։
Ժամ ժամանակ՝ դաժանագոյն օրերում իսկ անց կը կենայ [1]։

*ԲԱՆԿՈՅ*

Իմ ազնիւ Մակբեթ, մենք ձեր հրամանին ենք ըսպասում։

---

1) Մեկնիչները հետևեալ մտքով են հասկանում այս տողը, թէ երբեմն բոլորովին անսպասելի կերպով է գալիս յարմար ժամանակը՝ նպատակին հասնելու համար, երբ ըստ երևոյթին ամէն ինչ հակառակ է լինում նորա յաջողուելուն։

*ՄԱԿԲԵԹ*

Ներեցէք ինձ, պարոններ, յուզուած գլուխս անցած գնացած
Բաներով էր ըզբաղուած։ Տէրեր, ձեր աշխատութիւնն
Այն գրքի մէջ է գըրուած, որի թերթերն ես ամեն օր
Բաց եմ անում և կարդում։ Թագաւորին մօտ գընանք։
*(Բանկոյին)*։ Յիշիր այստեղ պատահածն. մի միջոց դեռ թող
անցնի,
Եւ յարմար ժամանակին խորհրդակցինք նորա մասին
Եւ բաց սրտով անկեղծաբար խօսակցինք։

*ԲԱՆԿՈՅ*

Մեծ հաճութեամբ։

*ՄԱԿԲԵԹ*

Մինչև այն օրն՝ բաւական է։—Օ՜ն, գընանք, բարեկամներ։
*(Գնում՝ են)*։

---

## ՉՈՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Ֆօրս։ Պալատում մի սենեակ։ Փողի ձայն։—ԴՈՒՆԿԱՆ, ՄԱԼ՛ԿՈԼ՛Մ, ԴՈՆԱԼ՛ԲԱՅՆ, ԼԷՆՈԿՍ և ՇՔԱԽՈՒՄԲԸ ներս են մտնում։

*ԴՈՒՆԿԱՆ*

Կաւդօրի դատավըճիռն կատարուեցա՞ւ, և արդէն
Յետ դարձե՞լ են պաշտօնով յուղարկածներս։

*ՄԱԼ՛ԿՈԼ՛Մ*

Իմ իշխան,
Նոքա դեռ ևս չեն դարձել։ Ես խօսեցայ մի մարդի հետ,
Որ նորա ականատես էր մահին. նա պատմում է,
Թէ Կաւդօրը սրտաբաց խոստովանել է իւր դաւը,
Ձեր Մեծութեան ներողութիւնն է հայցել և ցոյց տուել
Խորին անկեղծ ապաշաւ։ Ոչինչ նորա կեանքին մէջ
Այնչափ յարմար չէ եկել, որչափ հրաժեշտը կեանքից։
Մեռել է, նա՝ որպէս թէ մահի վերայ խորհած լինէր,

Եւ ձըգել է իրանից ամենազնիւ բանն որ ունէր՝
Իբրև չընչին մի առարկայ։

ԴՈՒՆԿԱՆ

Այն արուեստը մենք չունինք,
Որով հոգու պատկերը երեսի վրայ տեսնէինք։
Ազնըւական նա այն մարդն էր, որի վերայ դրել էի
Իմ լիուլի վըստահութիւնս։—Ո՜վ իմ անգին բարեկամ։

*(ՄԱԿԲԵԹ, ԲԱՆԿՈՅ, ՌՕՍՍ և ԱՆԳՈՒՍ ներս են մտնում)*

Ապերախտութեան յանցանքը ծանրանում է մինչև այժմ
Իմ վերաս։ Դու այնչափ առաջ անցար, որ չէ կարող
Վարձատրութեան ամենարագ թըռիչն էլ քո ետևից
Գալ հասնել։ Ուզում էի, որ քիչ լինէր քո արժանիքն,
Որպէս զի հաւասար շնորհակալիքն ու հատուցումն
Ինձ հնարաւոր լինէին։ Ինձ մընում է խոստովանիլ,
Որ աւելի եմ պարտական, քան կարող եմ վըճարել։

ՄԱԿԲԵԹ

Ծառայութիւնն, հնազանդութիւնն, որ պարտաւոր եմ քեզ՝
ինքնին
Վարձատըրւում են իրանցով։ Ձեր Մեծութեան վայել է
Ընդունել մեր ծառայութիւնն։ Մեր մատուցած ծառայութիւնն
Ձեր գահի, ձեր պետութեան որդիներն են և ըստրուկներն.
Իրանց պարտքն են կատարում՝ երբ անում են այն ամենը
Ձեր սիրու և ձեր պատուի համար։

ԴՈՒՆԿԱՆ

Գալուստըդ բարո՜վ։
Ես քեզ տընկել եմ իբրև ծառ, և պիտի խընամք տանիմ,
Որ աւելի և աւելի բարձր աճիս։—Ազնիւ Բանկոյ,
Պակաս չէ քո արժանիքդ. պէտք է նոյնչափ ճանաչուի՝
Ինչ որ արիր դու ինձ համար։ Թող ուրեմըն քեզ գըրկեմ
Եւ սեղմեմ կուրծքիս վերայ։ (*Գըրկախառնւում է*)։

ԲԱՆԿՈՅ

Ես այնտեղ կը սերմանեմ,

Բայց իմ հունձը ձերն է, տէր։

*ԴՈՒՆԿԱՆ*

Զափազանց ուրախութիւնս
Լցնում է սիրտս և ուզում է տխրութեան արտասուքով
Ծածկուել—Որդիներս, ազգականներ ու թէներ
Եւ դուք, որ մերձաւոր էք մեր գահին—իմացէք.
Մեզ ժառանգ կամեցանք նշանակել մեր անդրանիկ
Մալ'կոլ'մ որդուն։ Թող ուրեմն այսուհետև նա կոչուի
Իշխան Կումբերլ'անդի 1)։ Բայց պէտք չէ, որ միայն նա
Բաժին ստանայ այսպիսի բարձր պատիւ։ Ով որ ունի
Արժանիք՝ պէտք է որ նա ազնուական զարդերով
Ցոլայ ինչպէս աստղերից։ (*Մալքոլմին*) Այժըմ գընանք
Ինվերնէս.
Դու այնտեղ քեզ աւելի կըգըրաւես մեր սիրտը։

*ՄԱԿԲԵԹ*

Ինչ որ այժմ պէտք է անել՝ յարմարաւոր չէ ձեզ համար.
Ես ինքս ուզում եմ սուրհանդակ գընալով ուրախացնել
Իմ կընոջ ձեր գալուստի աւետաւոր համբաւով։
Ուրեմըն՝ խոնարհ հրաժեշտ տալիս եմ ձեզ։

*ԴՈՒՆԿԱՆ*

Ազնի՜ւ Կաւդոր։

*ՄԱԿԲԵԹ (առանձին)*

Նա իշխան Կումբերլ'անդի։ Գայթագղութեան սա է վէմ,
Որից ես կըսայթաքիմ, եթէ մէջից չըվերցընեմ.—
Ճանապարհիս մէջ տեղում ընկած է նա։—Ծածկեցէք
Ձեր լոյսն, աստղեր, սև ու խորունկ կամքըս մի լուսաւորէք։
Աչքե՛ր, ձեռքիս մի նայէք. Թող տըւէք որ կատարուի
Այն, որ եթէ կատարուի՝ աչքը նայել կըզարհուրի։ (*Գնում է*):

*ԴՈՒՆԿԱՆ*

Ցերուի, անգին Բանկոյ, արի է նա գըլխովին,

1) Սկովտիայում գահաժառանգը կոչւում էր Կումբերլ'անդի իշխան, ինչպէս Ֆրանսիայում՝ Դոֆէն։







Եւ նըրան վարձատրելն ըսփոփանք է ինձ համար...
Մի խընջոյք է սա ինձ։—Գընանք նորա ետևից.
Նորա խընամքն շատ յառաջեց, որ մեզ սիրով ընդունէ։
Մի ազգական է նա ինձ, որին չըկայ նըմանը։
(Թմբկի ձայն։ Գնում՝ են։)

---

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Ինվերնէս։ Մակբեթի ամրոցում մի սենեակ։—ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ ներս է մտնում մի նամակ կարդալով։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

«Նէրանք ինձ պատահեցան յաղթութեան օրը, և նէրանց գուշակութիւնից, որ կատարուեցաւ՝ ես համոզուեցայ, թէ նէրանք մահկանացուների գիտութիւնից աւելի ունին։ Երբ ես հետաքըքրութեամբ վառուած կամենում էի հարց ու փորձ շարունակել՝ նէրանք օդ դարձան և անհետացան։ Այս հրաշքին վերայ ես դեռ զարմացած մնացել էի՝ և ահա թագաւորի կողմից դեսպաններ եկան և շնորհաւորեցին ինձ իբրև Կաւդորի թէն. միևնոյն տիտղոսով ինձ ողջունեցին և գուշակ քոյրերն. մինչդեռ անմիջապէս սորանից յետոյ «Ողջոյն քեզ, Մակբեթ, որ թագաւոր պիտի լինիս» ասելով՝ ապագային ակնարկեցին։ Ես յարմար դատեցի այս բաները քեզ հաղորդել, ով ամենասիրելի ընկերուհի իմ մեծութեանս, որպէս զի դու չկորցնես ուրախութեան քո բաժինդ՝ եթէ ծանուկ մնար քեզանից, թէ ինչպիսի մեծութիւն է քեզ խոստացուած։ Սըրտումդ պահիր այս և ողջ լեր»։

Գլ'ամիս ես դու և Կաւդոր, դու կըլինիս նաև այն,
Ինչ որ քեզ խոստացուած է։ Վախենում եմ միայն սըրտիցդ.
Նա այնչափ է տոգորուած մարդասիրութեան կաթով,
Որ չի գընայ կարճ ճանապարհն։ Դու ուզում ես մեծ լինել,
Քեզ պակաս չէ փառքի սէրը, բայց պակաս է չարութիւնն,
Որով նորան հասնէիր։ Ինչ որ դու շատ ես ցանկանում՝
Ցանկանում ես արդար սըրտով. դու չես սիրում խաղախ խաղ,

Եւ ոչ վաստակ անիրաւ։ Քո բաղձանքդ, իմ մեծ Գլ՛ամիս,
Գոչում է. «այսպէս արա, թէ ուզում ես այս ունենալ»,
Եւ որը գործելուց դու աւելի վախենում ես,
Քան կամենում, որ նա գործուած չըլինի։ Փութա այստեղ,
Որ իմ սիրտս կարողանամ հալել ականջըդ լըցնել,
Եւ լեզուիս զօրութեամբ հալածեմ ամեն արգելք,
Որոնք քեզ յետ են սարտեցնում այն ոսկեղէն պըսակից,
Որով բախտն ու գերընական զօրութիւններն յայտնապէս
Քեզ պըսակել են թըւում։ (*Մի ԾԱՌԱՅ ներս է մտնում*):
Ի՞նչ նորութիւն ես բերում։

ԾԱՌԱՅ

Թագաւորն երեկոյիս կըգայ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Դու խենթացել ես.
Քո տէրդ էլ նորա հետ չէ՞։ Եթէ այսպէս լինէր՝ նա
Տեղեկութիւն ինձ կըտար պատրաստութիւն տեսնելու։

ԾԱՌԱՅ

Հաւատացէք, ճիշտ է այս։ Մեր թէնն էլ շուտով կըգայ։
Ընկերներիցըս մէկը նորանից առաջ հասաւ,
Ըշտապելուց կիսամեռ և հազիւ շունչ էր քաշում
Որ հաղորդէր այս լուրը։

Լ. ՄԱԿԲԵԹ

Խնամիր նրան, թող հանգչի.
Նա մեծ լուր բերեց։ (*ծառան գնում է*):
Ագռաւն աշտարակին վրայ այնչափ
Կըռկըռաց թագաւորի օրհասական գալուստի
Մասին, որ ձայնը կըտրուեց։—Եկէք դուք, ոգիներ,
Որ հըսկում էք սպանութեան խորհուրդներին. փոխեցէք
Կանացի սեռս և ինձ լըցրէք գագաթից մինչև կըրունկս
Ահեղասոսկ կատաղութեամբ. լերդացրէք իմ արիւնըս,
Խըղճմըտանքի ամեն անցք ու ճանապարհ փակեցէք.
Որպէս զի բընութեան կարեկցութեան այցելութիւնն
Իմ սոսկալի ձեռնարկութիւնս չարգելէ, և հաշտութիւնն

Ձըխառնըւի նորա մէջ։ Մօտեցէք ըստինքներիս,
Փոխեցէք կաթը մաղձի, սպանութեան պաշտօնեաներ,
Ո՛րտեղ էլ որ դուք լինիք աներևոյթ կերպարանքով
Եւ բնութեան ոճիրներին օգնէք։ Ե՛կ, խաւար գիշեր,
Ըզգեցիր դու վերադ դըժոխային ծուխը մըռայլ՝
Որ իմ սուրս եղեռնագործ չըտեսնէ ում է դիպչում,
Եւ երկինքը քօղի տակից չըտեսնէ ու չըգոչէ
«Դադարի՛ր, դադարի՛ր»։ *(ՄԱԿԲԵԹ ներս է մտնում)*:
Իմ մեծ Գլ՛ամիս, ազնիւ Կաւդոր,
Եւ մեծագոյն քան այս երկուքն ապագայի ողջոյնովը։
Քո նամակդ ինձանից հեռու վանեց այս ներկայ
Աննըշան ժամանակն, և ես արդէն ըզգում եմ
Ապագան ներկայիս մէջ։

*ՄԱԿԲԵԹ*

Իմ սիրելի ամուսին,
Այս գիշեր մեզ մօտ կըգայ Դունկան։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Եւ ե՞րբ յետ կըգառնայ։

*ՄԱԿԲԵԹ*

Վաղն առաւօտ, ինչպէս նա նախադրում էր։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Ո՜, երբէք
Արեգակն այդ առաւօտը չի տեսնի։
Քո երեսդ, թէն, նըման է գըրքի. այնտեղ կարելի է
Տարօրինակ բաներ կարդալ։—Որպէս զի աշխարհ խաբես՝
Նայիր ինքդ, ինչպէս աշխարհն. բարեկամ ձևացիր
Աչքով, լեզուով ու ձեռքով, անմեղ թըւիր ինչպէս ծաղիկ,
Բայց ներքևից օձ պահիր։ Ահա երբ գալիս է նա՝
Պէտք է որ լաւ խընամուի. բայց միայն ինձ յանձնիր դու
Այս գիշեր կատարուելու մեծ գործի բոլոր հոգսը։
Սա մեր բոլոր ապագայ գիշերներին և օրերին
Կըբերէ իշխանական և անսահման մեծութիւն։

*ՄԱԿԲԵԹ*

Այս մասին դեռ կըխօսենք։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Միայն դու զըւարթ նայէր.
Նա որ փոխում է իւր դէմքն՝ յայտնի անում է իւր երկիւղն։
Իսկ բոլոր մընացածը թող ինձ է. (*Գնում՛ են*)։

---

## ՎԵՑԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Նոյն տեղում. Ամրոցի առաջ.—ՓՈՂՀԱՐՆԵՐ և ԶԱՀԱԿԻՐՆԵՐ
ներս են մտնում. Դալիս են յետոյ ԴՈՒՆԿԱՆ, ՄԱԼԿՈԼՄ, ԴՈ-
ՆԱԼԲԱՅՆ, ԲԱՆԿՈՑ, ԼԷՆՈԿՍ, ՄԱԿԴՈՒՖ, ՌՕՍՍ, ԱՆԳՈՒՍ և
ՇՔԱԽՈՒՄԲԸ.

*ԴՈՒՆԿԱՆ*

Զուարճալի է ամրոցի դիրքը, օդը սխորժելի,
Զովարար է և թեթև. Ինչպէս նա խաղաղ տեղում
Գրգւում է մեր զգայութիւններն։

*ԲԱՆԿՈՑ*

Ամառնային այս հիւրը,
Տաճարաբնակ ծիծեռնակն, իւր սիրելի ներկայութեամբ
Ցոյց է տալիս, թէ երկընքի հիւրասէր է շունչն այստեղ։
Ոչ մի կամար կամ առաստաղ, ոչ մի սիւն կամ անկիւն
Ազատ չըկան, ուր այս թըռչունը չըհիւսէր իւր ճօճացող
Բոյնիկը և ձագերով լի օրօրոցն։ Նըկատել եմ,
Որտեղ որ նա թուխս նըստի ու բընակէ՝ այնտեղ միշտ
Մաքուր է օդն։ (*ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ ներս է մտնում*)։

*ԴՈՒՆԿԱՆ*

Ահա մեր ասպընջական ազնիւ տիկին։—
Մեզ հետևող սէրը յաճախ ծանրութիւն է պատճառում.
Բայց մենք նորան շնորհակալ ենք էրև սէրի. իսկ դուք մեզ
Պարտական էք, որ Աստուած ձեր ծանրութեան ու ջանքին
Փոխարէն կըվարձատրէ ձեզ։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Մեր բոլոր ծառայութիւնքն
Եթէ կրկին և կրկին մենք անէինք ամեն կէտում՝
Նորից խեղճ և աննըշան բան կլինէր, նըկատմամբ
Այն անթիւ և անհամար շնորհներին, որով մեր տունն
Ձեր Մեծութիւնը լիացրեց։ Թէ ձեր նախկին բարիքներին,
Թէ ներկայ պատուին համար՝ մեզ մընում է միայն ճըգնել
Եւ աղօթել ձեզ համար։

*ԴՈՒՆԿԱՆ*

Բայց ո՞ւր է Կաւդորի թէնն։
Նորա հետքով մենք փութացինք, պատրաստել կամենալով
Այստեղ նորա՛ն բնակարան։ Բայց նա արագ է գնացքում։
Նորա սէրն, որ աւելի սուր է քան թէ խըթանը՝
Նըրան կանուխ տեղ հասցրեց։—Օրիորդ, ազնիւ տիրուհի,
Ձեզ հիւր ենք մենք այս գիշեր։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Նոքա որ ձեզ ծառայում են՝
Համարում են իրանց կեանքն ու բոլոր ստացուածքներն
Իբրև փոխ առած, տէր. երբ հաճիք յետ պահանջել՝
Նոքա բոլորը ձերն են։

*ԴՈՒՆԿԱՆ*

Հաճեցէք ձեր ձեռքն ինձ տալ.
Տարէք ինձ հիւրընկալիս մօտ։ Մենք նըրան շատ ենք սիրում,
Եւ մեր շնորհը դէպի նա միշտ անփոփոխ կըմընայ։
Թոյլ տըւէք ինձ, տիրուհի։ (*Մտնում են ամրոցը*)։

---

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Միևնոյն տեղում. Ամրոցում մի սենեակ—Փողեր ու ջահեր։ Մի ՏԱԿԱՌԱՊԵՏ և շատ ԾԱՌԱՆԵՐ սկուտեղներով անցնում են բեմի վըրայից։ Յետոյ գալիս է ՄԱԿԲԵԹ։

Եթէ սա ձեռնարկուելիս կատարուէր ևս՝ լաւ կլինէր.—
Մարդ իսկոյն այն կըգործէր։ Եթէ այս ըսպանութիւնն

Նըպատակին հասցընէր և ձեռք բերել կարողանար
Նաև գործի յաջողութիւնն, այնպէս որ այս հարուածը
Միմիայնը լինէր և ամենայն ինչն այստեղ,
Միայն այստեղ, ժամանակի կարճ հոսանքում՝—ես դիւրաւ
Կանցնէի ապագայ կեանքի վրայով [1])։ Բայց այս դէպքերն
Հէնց այստեղ են ըստանում իրանց պատիժն։ Արիւնահեղ
Դասն որ տալիս ենք ուրիշին՝ վիրտ լինելով [2]) յետ է դառնում
Հեղինակին գլուխը։ Անաչառ արդարութիւնն
Մօտեցնում է մեր շըրթունքին այն բաժակն, որ մենք ինքներս
Դեղեցինք թոյնով։ Այստեղ պաշտպանուած է նա կըրկնակի.—
Նախ որ նորա արիւնակից ազգականն եմ և հըպատակն.
Երկուքն ևս իմ դիտումիս դէմ են.—յետոյ՝ հիւրընկալն եմ,
Որ նորա սպանողին դէմ պարտաւոր է դուռը գոցել,
Եւ ոչ ինքնին դանակ վերցնել նորա վրայ։ Սորանից զատ
Դունկան այնչափ հեզ էր իւր զօրութեան մէջ և այնչափ
Մաքուր իւր մեծ աստիճանում՝ որ նորա առաքինի
Գործերն վըկայ կըլինին, իբրև հրեշտակ փողի ձայնով՝
Նորա ժըպիրհ ըսպանչի դըժոխային կատաղութեան։
Կարեկցութիւնն իսկ, ինչպէս մերկ նորածին երեխայ,
Որ հեծած է փոթորկի վերայ, կամ մի քերովբէ,
Որ սլանում է օդեղէն աներևոյթ նժոյգի վերայ՝
Կըշըրնչէ այս սոսկալի գործն ամենքի աչքերին մէջ,
Մինչև որ արտասուքներն խոնաւացնեն հողն։ Ես չունիմ
Ուրիշ խըթան դիտումիս կողը մըշտելու՝ բայց միայն
Փառասիրութիւնն, որ թամբից դուրս է թըռչում և գետին
Է թաւալում միւս կողմում։

---

1) Այսինքն՝ եթէ մարդասպանութիւնը ինձ հասցնէր նըպատակիս և ես թագաւոր դառնայի. եթէ այս աշխարհում իմ արածիս պատիժը չկրէի և իմ սուրս իմ գլուխս չդառնար՝ ապագայ կեանքի երանութիւնը ես դիւրաւ կըզոհէի և չէի վախենայ դժոխքի սպառնալիքից։

2) Վիրտ լինել—սովորել, վարժութիւն դառնալ։

*(ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ ներս է մտնում)։*

Ի՞նչպէս է, ի՞նչ նոր լուր կայ։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Շուտով ընթրիքը կաւարտէ։ Դահլիճից ինչո՞ւ գնացիր։

*ՄԱԿԲԵԹ*

Միթէ հարցրեց իմ մասին։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Չըգիտէ՞ք, որ կըհարցնէ։

*ՄԱԿԲԵԹ*

Լաւ է որ մենք այս գործում աւելի առաջ չերթանք։
Շատ ժամանակ չէ, որ ինձ նա մեծարեց, և բազմախուռն
Ժողովրդի առաջ ոսկի գաղափար ես ըստացայ,
Որ դեռևս հարկ է կըրել ամենաթարմ շողերին մէջ,
Եւ ոչ թէ նետել իսկոյն։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Ուրեմն հարբա՞ծ էր այն յոյսն,
Որով դու զրաւուած էիր, կամ քընեցա՞ւ այնուհետև,
Եւ զարթելով նայո՞ւմ է այժմ գունաթափ, ապուշ դէմքով
Իւր յօժար կամքով ընտրած գործին։ Այժմ ես հասկացայ,
Թէ ո՞րչափ սիրում ես ինձ։ Սարսափո՞ւմ ես միթէ դու
Արիութեամբ ու գործով նոյնը լինել՝ ինչ որ ես
Բաղձանքներիդ մէջ։ Թերևս դու կուզէիր ըստանալ
Այն, որ կեանքի ամենամեծ զարդարանքն ես համարում՝
Եւ հէնց նոյն իսկ քո աչքումդ այն երկչոտը լինել, որ
„Շատ ուզում եմ“ խօսքին միշտ յարում է „չեմ համարձակում“,
Ինչպէս կատուն առածին մէջ [1])։

*ՄԱԿԲԵԹ*

Մի՛ խօսիր, խընդրում եմ քեզ։

---

1) Անգլիական առած—The cat would eat fish, and would not wat her feet", որ առնուած է լատիներէնից. „Catus amat pisces, sed non vult tingere plantas", և նշանակում է. „Կատուն ձուկ սիրում է, բայց չէ ուզում թաթիկները թաթախել".

Համարձակում եմ ես գործել՝ ինչ որ վայել է մարդին.
Իսկ աւելին ով յանդգնի՝ նա մարդ չէ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Ո՞ր կենդանին
Ուրեմն քեզ ստիպեց յայտնել ինձ այս ձեռնարկութիւնն։
Քանի որ վստահանում էիր գործել՝ մարդ էիր դու.
Եւ թէ լինիս աւելի քան թէ էիր՝ դու աւելի
Մարդ կըդառնաս։ Այն ատեն ո՛չ ժամանակն և ոչ տեղն
Յարմար չէին, բայց գոյացնել ուզում էիր երկուսն էլ։
Այժմ ինքնին գոյանում են նոքա, և այս յարմարութիւնն
Անգոյացնում է քեզ։ Ծիծ տուել եմ ես և գիտեմ
Քնքոյշ սէրը դէպ այն մանուկն, որին իմ կաթս եմ տալիս.
Բայց սակայն, մինչ նա ժըպտում է երեսիս՝ ես նորա
Անատամ փոքրիկ բերնից ստինքըս դուրս կըխըլէի
Եւ գլուխը կըջարդէի, թէ երդուէի ես՝ ինչպէս
Դու երդուեցար։

ՄԱԿԲԵԹ

Բայց եթէ չըյաջողի՞...

Լ. ՄԱԿԲԵԹ

Չըյաջողի՜։
Դու միայն բորբոքեցրու քո արութիւնդ վերջի ծայր՝
Եւ անշուշտ կըյաջողի։ Երբ որ քուն լինի Դունկան—
Եւ աւուր ծանըր ճանապարհն հարկաւ նըրան կըհրաւիրէ
Դէպի քուն—նորա երկու սենեկապան ծառաներին
Ես այնպէս լաւ կըթըմրեցնեմ արմատներով ու գինով՝
Որ ուղեղի պահապան ըզգայութիւնը ծուխ դառնայ
Եւ խելքի ընդունարանն՝ լոկ շոգիի մի աման։
Երբ այսպէս անասնական քընով նոցա հարբեցած
Մարմիններն քընած լինին, որպէս թէ մեռելութեամբ՝
Այն ժամանակ դու և ես ի՞նչ չենք կարող կատարել
Անպաշտպան Դունկանին վրայ, ի՞նչ չենք կարող մենք բարդել
Նորա հարբած ծառաների վըզին.—բոլոր յանցանքը
Մեր այս մեծ ըսպանութեան։

*ՄԱԿԲԵԹ*

Միայն արու ծընիր դու ինձ.
Աներկիւղ քո բընութիւնդ կազմել կարող է միայն
Արուներ։ Եւ մի՞թէ չի համոզուի ամեն ոք—
Եթէ երկու ծառաներին վերայ, որոնք մօտն էին,
Մենք արիւն սըրըսկենք և նոցա սուրն էլ գործածենք՝—
Թէ նոքա են այս արել։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Եւ ո՞վ կարող է այլապէս
Մըտածել՝ երբ մեր կողմից լաց ու կոծի ձայնը գուժէ
Նորա մահի առիթով։

*ՄԱԿԲԵԹ*

Ես վըճռեցի, և անձիս
Ամեն մի ոյժն ես լարում եմ այն սոսկալի գործին համար։
Օ՜ն, գընանք, ծաղրենք աշխարհն անմեղ հանդարտ երեսով։
Խարդախ դէմքը թող պարտակէ՝ ինչ որ գիտէ խարդախ սիրտն։
(*Գնում են*)։

---

# ԵՐԿՐՈՐԴ ԱՐԱՐՈՒԱԾ



## ԱՌԱՋԻՆ ՏԵՍԱՐԱՆ

Նոյն տեղում։ Ամրոցի բակը։—Ներս են մտնում ԲԱՆԿՈՅ և ՖԼԻՆՍ, որ լապտերով գնում է նորա առաջից։

*ԲԱՆԿՈՅ*

Գիշերը ո՞ր ժամանակն է, տըղայ։

*ՖԼԻՆՍ*

Լուսինը
Մայրը մըտաւ. իսկ զանգակի ձայնը ես չըլըսեցի։

*ԲԱՆԿՈՅ*

Տասներկուսին մըտնում է նա։

*ՖԼԻՆՍ*

Այժմ աւելի ուշ է, տէր։

*ԲԱՆԿՈՅ*

Սուրըս առ։—Երկընքում էլ տընտեսութիւն են անում.
Ճրագները հանգցըրած են այնտեղ։ Ահա՛, այս էլ առ։
Քընելու կարիքն ինչպէս արճիճ վըրաս ծանրացել է.
Բայց չըքընել էի ուզում։—Գըթառատ զօրութիւններ,
Սանձեցէք իմ մէջ այն գըժոխային խորհուրդներն,
Որ քընի մէջ յարուցանում է բնութիւնն։ Սուրս ինձ տուր։
*(ՄԱԿԲԵԹ եւ մի ԾԱՌԱՅ լապտերով ներս են մտնում):*
Ո՞վ է այդ։

*ՄԱԿԲԵԹ*

Մի բարեկամ։

*ԲԱՆԿՈՅ*

Ի՞նչպէս, տէր, դեռ չէք քընել։ Թագաւորը պառկեցաւ։
Անսովոր զըւարթութեան մէջ էր այսօր նա, և ձեր
Ծառաներին ուղարկեց առատաձեռն ընծաներ։
Ահա այս ադամանդով ողջունեց ձեր ամուսնուն,
Ինչպէս իւր բարեսիրտ հիւրընկալին, և սեղանից
Վեր կացաւ մեծ գոհութեամբ։

*ՄԱԿԲԵԹ*

Մենք անպատրաստ լինելով
Մեր կամքը գերի դարձաւ պակասութեան, ապա թէ ոչ
Նա ազատ կըկարգադրէր։

*ԲԱՆԿՈՅ*

Ոչ մի բան պակաս չըկար։—
Ես երազում տեսայ գիշերս երեք վըհուկ քոյրերին։—
Ձեզ ճըշմարիտ ասացին։

*ՄԱԿԲԵԹ*

Ես այդ մասին չեմ մըտածում։

Բայց եթէ յարմարաւոր մի ազատ ժամ գտնէինք՝
Այս գործի մասին փոքր ինչ կըխօսէինք, եթէ ինձ
ժամանակ նուիրէիք։

ԲԱՆԿՈՑ

Ինչպէս որ ձեզ հաճոյ է։

ՄԱԿԲԵԹ

Եթէ դուք համաձայնէք ինձ հետ, երբ այս պատահի՝
Ձեզ պատիւ կըբերէ։

ԲԱՆԿՈՑ

Եթէ միայն չկորցնեմ այն,
Ես աւելին փընտռելով, եթէ ընդ միշտ պահպանեմ
Սիրտըս ազատ, և մաքուր իմ պարտքերի ճանաչումն՝
Ցանձըն կառնեմ ձեր խորհուրդը։

ՄԱԿԲԵԹ

Գիշեր բարի ձեզ առ այժմ։

ԲԱՆԿՈՑ

Շնորհակալ եմ, տէր, նոյնը ձեզ։ (*Բանկոյ և Ֆլինս գնում են*)։

ՄԱԿԲԵԹ (*ծառային*)

Գընա, ասա տիրուհուդ՝ ըմպելիքս երբ պատրաստ լինի՝
Թող զանգակն հընչեցնէ. յետոյ գընա պառկելու։ (*Ծառան գնում է*)։

Դաշոյն է արդեօք այս, որ տեսնում եմ իմ առաջ,
Երախակալն ինձ դարձած։ Ե՛կ, թո՛ղ, որ քեզ բռնեմ։—
Ձեռքումս ես քեզ չունիմ, պակայն շարունակ տեսնում եմ քեզ։
Մի՞թէ դու, օրհասական երևոյթ, ըզգալի չես
Նոյնպէս ձեռքի, ինչպէս աչքի. կամ մի՞թէ դու դաշոյն ես
Երևակայութեան համար, մի խարդախ արարած,
Որ առաջ ես եկել իմ բորբոքուած ուղեղից։
Ես դեռ և ես տեսնում եմ քեզ, ձևով այնքան շօշափելի,
Որչափ այս, որ ես ահա դուրս եմ քաշում պատեանից։
Դու ինձ ուղղում ես այն շաւիղն, ուր ես ուզում եմ ոտք դընել։

Եւ այսպիսի մի գործիք փնտրում էի գործածելու։
Խեղկատակ դարձան աչքերս միւս զգայարանքներիս,
Կամ աւելի ունին արժէք. քեզ տեսնում եմ ես դեռ ևս,
Եւ սայրիդ ու ձեռնակիդ վերայ արեան կաթիլներ,
Որ առաջ չըկային։ Ո՛չ, ոչինչ այստեղ չըկայ.
Սա միայն արիւնալից այն գործն է, որ խաբում է
Իմ աչքերս։ Կէս աշխարհի համար այժմ բընութիւնը
Մեռած է թւում, և խօլական երազներն անկողնի մէջ
Ահաբեկում են քունը։ Կախարդ ոյժերը զոհում են
Արդէն տըժգոյն Հէկատին, և վըտիտ ըսպանութիւնն,
Զարթելով իւր պահապան գայլից, որ իւր ոռնալով
Հընչեցնում է պահապանի իւր կոչնակն՝ տարկուինական
Գաղտագողի շաւիղներով սող է գալիս ճիւաղի պէս
Դէպի իւր նըպատակը։—Դու, ապահով ամուր երկիր,
Մի՛ լըսեր քայլափոխներս, թէ ո՛ւր գընում են նոքա.
Մի՛ գուցէ պատմեն քարերն գընացքիս ուր ուղղուիլն
Եւ գիշերից խըլեն այս պատշաճաւոր սարսափը։—
Ես այստեղ ըսպառնում եմ, իսկ նա ապրում է այնտեղ։
Գործերի ջերմութեան խօսքերը սառն են գալիս։ *(Հնչում է մի զանգակ)*։
Գընում եմ և գործուած է. զանգակը կոչում է ինձ։
Դու մի՛ լըսեր այն, Դունկան. մահահըրաւէր կոչնակ է այն,
Որ քեզ համար բաց է անում կամ երկինք, կամ դըժոխք։ *(Գնում է)*։

---

## ԵՐԿՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Միևնոյն տեղում։—ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ ներս է մտնում։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Ինչ որ նոցա հարբեցրեց՝ արիութիւն տըւեց ինձ.
Ինչ որ մարեց նոցա ճրագն՝ ինձ կըրակ տըւեց։—Լո՛ւռ։—
Բուէջն էր, որ կռանչեց, օրհասական զանգակահարն,
Որ զարշելի «գիշեր բարի» է կանչում։—Այնտեղ է նա,

Բաց են դըռները, և գինովցած սպասաւորները խըռկալով
Ծաղր են անում իրանց պաշտօնն։ Ես նոցա ըմպելիքին
Դեղ խառնեցի, այնպէս որ մահը և կեանքը վիճում են,
Թէ նոքա կենդանի են, թէ մեռած։

*ՄԱԿԲԵԹ (տեսարանի ներքեւից)*

Ո՞վ է, էյ [1]։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Աւա՜ղ, վախենում եմ ես, թէ նոքա զարթեցան,
Եւ գործը չըկատարուեց։ Ձեռնարկութիւնն և ոչ գործն
Կըկործանէ մեզ։—Ա՛, լը՛ու։—Ես սակայն պատրաստ դըրի
Դաշոյնը. պէտք է որ նա գըտնէր։ Եթէ քընին մէջ
Չընմանէր իմ հօրս՝ ինքնին ես կանէի։ (*ՄԱԿԲԵԹ ներս է մտնում*):
Ի՞նչ կայ, մա՛րդ։

*ՄԱԿԲԵԹ*

Գործը կատարեցի։ Չըլըսեցի՞ր աղաղակ։

---

1) «Մակբեթի այս բացագանչութիւնը առիթ է տուել բազմաթիւ բացատրութիւնների։ Հաւանական է, որ Մակբեթ Դունկանի քնած սենեակը գնալիս, բեմի վրայով անցնելու ժամանակ, վերահաս սպանութեան մտքից խռովուած և յուզուած՝ երեւակայում է, թէ ով-որ իրան հանդիպեցաւ, ուստի և հարցնում է «ո՞վ է, էյ». բայց տեսնելով որ ոչ ոք չկայ՝ առաջ է գնում»։—Ուստրեալով։

Մենք կարծում ենք սակայն, որ այս բացագանչութիւնն աւելի բնական կերպով կարելի է բացատրել, հիմնուելով նոյն իսկ բնագրի վրայ։ Երբ Մակբեթ գնում էր Դունկանին սպանելու՝ բուն ճուաց և ճպուռը ծղրտաց, և այս ձայները Լ. Մակբեթն էլ լսեց ու զարհուրեցաւ. («Լը՛ու։—Բուէջն էր, որ կառանչեց».... «Ա՛, լը՛ու»։ Լ. Մակբեթ)։ Հաւանական է, որ Մակբեթ ևս բեմի ներսում լսեց այս ձայներից մէկը կամ միւսը (հաւանօրէն վերջինը) և նա նոյնպէս բացագանչեց, ինչպէս նորա կինը՝ վարն սպասելիս։ Այս երեւում է Մակբեթի և կնոջ հետագայ խօսակցութիւնից, որ տեղի է ունենում փոքր ինչ յետոյ. Մակբեթ. «Գործը կատարեցի։ Չլսեցի՞ր աղաղակ». (ինչ որ ինքը լսել էր)։ Լ. Մակբեթ. «Լսեցի բուի ճուոցն ու ճպուռի ծղրտոցն», (որով բաւականանում է Մակբեթ)։ Հ. Թ.

Լ. ՄԱԿԲԵԹ

Լըսեցի բուի ճըչոցն ու ճըպուռի ծըղըրտոցն։
Դու մի բան չասացի՞ր։

ՄԱԿԲԵԹ

Ե՞րբ

Լ. ՄԱԿԲԵԹ

Նոր։

ՄԱԿԲԵԹ

Իմ վար իջնելի՞ս։

Լ. ՄԱԿԲԵԹ

Այո։

ՄԱԿԲԵԹ

Լո՜ւռ—Ո՞վ է քընած ամենամօտ սենեակում։

Լ. ՄԱԿԲԵԹ

Դոնալ՛բայն։

ՄԱԿԲԵԹ

*(Ձեռներին նայելով)* Տըխրալի մի տեսարան է այս։

Լ. ՄԱԿԲԵԹ

Ահա՜

Խենթ ու խելար մի խօսք, ասելը տըխրալի տեսարան։

ՄԱԿԲԵԹ

Քընին մէջ մէկը ծիծաղեց. «սպանութի՛ւն» գոչեց միւսը։
Այսպէս միմեանց զարթեցրին։ Ես կանգնած լըսում էի։
Բայց նոքա իրանց աղօթքն ասացին ու կրկին դարձան
Իրանց քընին։

Լ. ՄԱԿԲԵԹ

Այն երկուքն այնտեղ պառկած են միասին։

ՄԱԿԲԵԹ

Մէկը գոչեց. «Աստուա՜ծ, ողորմիր մեզ», միւսն՝ «Ամէ՜ն»,
Որպէս թէ ինձ տեսնէին, այս իմ դահճի ձեռներովս,
Նոցա ականջ անելիս։ Ես կարող չեղայ ասել

«Ամէն»՝ երբ «Աստուած, ողորմիր մեզ» ասացին։

Լ. ՄԱԿԲԵԹ

Շատ մի հոգար։

ՄԱԿԲԵԹ

Բայց ինչո՞ւ կարող չեղայ ասել Ամէն։
Ես օրհնութեան պէտք ունէի շատ. սակայն այս «Ամէնը»
Կոկորդումըս խրգուեցաւ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Այս գործերին վերայ հարկ չէ
Խոր մըտածել, ապա թէ ոչ նոքա մեզ կըխենթացնեն։

ՄԱԿԲԵԹ

Կարծես լըսում էի, որ գոչում էր մէկն. „Էլ մի՛ քընիք.
«Մակբեթ քունն ըսպանում է, անմեղ քունը. այն քունը,
«Որ հոգսերի կընճռոտած կըծիկը բաց է անում,
«Ամենօրեայ կեանքի մահը, ծանր յոգնութեան բաղանիքը,
«Վիրաւոր սըրտերի դեղն, հըզօր բնութեան երկրորդ քայլը,
«Գըլխաւոր կերակուրը այս կեանքի խընջոյքին մէջ“։

Լ. ՄԱԿԲԵԹ

Դու այդ ինչ ես մըտածում։

ՄԱԿԲԵԹ

Բոլոր տան մէջ նա գոչում է միշտ. «Այլ եւըս մի՛ քընիր,
«Գլ՚ամիսը քունն ըսպանեց. սորա համար և Կաւդորն
Այլեւս պիտի չըքընի, Մակբեթն այլեւս չըքընի»։

Լ. ՄԱԿԲԵԹ

Բայց ո՞վ էր, որ այդպէս գոչեց։ Ո՜վ իմ յարգելի թէն,
Դու մեղկացնում ես քո ազնիւ զօրութիւնը, գործերի վրայ
Այդպէս հիւանդ մըտածմունքներ անելով։ Գընա, ջուր առ,
Եւ լըւա ձեռներիցդ այդ գաղիր վըկայութիւնն։
Ինչո՞ւ համար այս դաշոյններն հետըդ բերիր այնտեղից։
Այնտե՛ղ, այնտե՛ղ դիր դըրանք. յետ տար դըրանք և սըրըսկիր
Քուն եղած ծառաներին վրայ արիւն։

ՄԱԿԲԵԹ

Է՛լ չեմ գընայ։

Զարհուրում եմ խորհելիս, թէ ես ինչ բան գործեցի։
Կըրկին տեսնել նըրան—ես այդ չեմ կարող։

Լ. ՄԱԿԲԵԹ

Թուլամո՛րթ.
Դաշյնները ինձ տուր. քընածն ու մեռածը ոչինչ են,
Քան պատկերներ. և միայն երեխայի աչքերն են,
Որ վախում են նըկարուած սատանայից։ Եթէ արիւնն
Հոսում է դեռ՝ կօսկեզօծեմ ծառաների երեսներն,
Եւ յանցանքը կըհամարուի նոցանը։ (*Գնում է։ Դուռը դըսից բաղխում են*)։

ՄԱԿԲԵԹ

Ի՞նչ դըրան զարկ է։
Այս ինչ դարձայ։ Ամեն մի ձայն սարսափ բերում է վերաս։
Ի՞նչ ձեռներ են այս։ Հը՛։ Խօցոտում են նոքա աչքերս։
Պոսէյդոնի ովկիանոսն այս արիւնը կըլըւա՞յ,
Կըմաքրէ իմ ձեռներից։ Ո՛չ, մանաւանդ այս ձեռներն
Անհուն ծովերն ծիրանեգոյն կըներկեն և կըփոխեն
Ջըրերի կանաչ գոյնը կարմիրի։ (*Լ. ՄԱԿԲԵԹ կրկին ներս է մտնում*)։

Լ. ՄԱԿԲԵԹ

Ահա այժմ
Իմ ձեռներս էլ քոնի նըման կարմրեցան. բայց ամօթ էր՝
Եթէ քեզ պէս ճերմակ սիրտ ունենայի։ (*Դուռը բաղխում են*)։
Լըսում եմ,
Հարաւային դուռն են բաղխում։ Քաշուինք, գընանք մեր սենեակն։
Փոքր ինչ ջուրը մեզանից կըլըւանայ այս գործը.
Ո՛րչափ դիւրին կըլինի այս։ Քո հոգու արիութիւնն
Քեզ թողեց բոլորովին։ (*Դուռը բաղխում են*)։ Ա՛յ, նորից բաղխեցին։
Գիշերազգեստդ հագիր, որ եթէ յանկարծ վերայ գան՝
Չըհասկանան, թէ արթուն էինք։—Այդպէս մի ընկըղմիր
Խորհուրդների մէջ մոլորուած ու թըշուառ կերպարանքով։

*ՄԱԿԲԵԹ*

Իմ գործերիս ճանաչումն։ Ո՜ւր էր ինքս ինձ չըճանչէի։

*(Դուռը բաղխում՛ են)։*

Զարկ, զարթեցրու Դունկանին։ Ա՜հ, եթէ կարենայիր։

*Գնում՛ են։*

---

## ԵՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Նոյն տեղում։—ԴՌՆԱՊԱՆԸ ներս է մտնում։ Դրան զարկը կրկնւում է։

*ԴՌՆԱՊԱՆ*

Ես ու իմ հոգիս, ա՛յ դուռ զարնել։ Եթէ մարդ դժոխքի դռնապան լինէր՝ պէտք է անդադար բանալին դարձնէր։ *(Դուռը բաղխում՛ են)*։ Թա՛կ, թա՛կ, թա՛կ։ Ո՞վ է այդ, յանուն Բեհեղզեբուղի [1])։ Երևի ցորենի վաճառական է, որ լաւ հունձքի սպասելով ինքն իրան կախեց։—Բարի, հազար բարի։ Հետդ միայն բաւական թաշկինակ վերցնէիր. այստեղ դեռ շատ պիտի քրտնիս այդ պատճառով։ *(Բաղխում՛ են)*։ Թա՛կ, թա՛կ։ Ո՞վ է այդ, յանուն միւս սատանային։ Հաւատաս՝ երկլեզուանի մէկն է, որ իւրաքանչիւր տփի մէջ իւրաքանչիւր տփի դէմ կարող է ձգել իւր քաշն. Նա, որ բաւական դաւաճանութիւններ գործեց «ի փառս Աստուծոյ», բայց չկարողացաւ խաբխաբելով երկինքն էլ ընկնել։ Հրամիր ներս, կրկնալեզու։ *(Բաղխում՛ են)*։ Թա՛կ, թա՛կ, թա՛կ։ Ո՞վ է այդ։ Հաւատս վկայ՝ մի անգլիացի դերձակ է այստեղ եկողն, որովհետև ֆրանսիացու վարտիքից մի կտոր գողացաւ։ Ներս մտիր, դերձակ. դու կարող ես այստեղ արդուկդ տաքացնել։ *(Բաղխում՛ են)*։ Թա՛կ, թա՛կ։ Դադար չկա՛յ։ Ո՞վ ես դու։—Բայց այս տեղը շատ պաղ է իբրև դժոխք։ Էլ չեմ կարող ես սատանայի դռնապան լինել, ապա թէ ոչ ներս կթողնէի ամեն արհեստից մէկ-երկուսին, որոնք ծաղկալից ճանապարհով գնում

---

1) Դռնապանն ինքն իրան երևակայում է դժոխքի դրանը կանգնած և կարծում է, թէ եկողները մեղաւորներ են՝ յանցանքի համար դժոխքի դատապարտուած։ Հ. Թ.

են դէպի մշտնջենաւոր ուրախութեան հուրը: (*Բաղխում են*):
Իսկո՛յն, իսկո՛յն:—Խնդրում եմ ձեզ՝ դռնապանին էլ մտքերդ բերէք:

*(Բաց է անում դուռը: ՄԱԿԴՈՒՖ եւ ԼԷՆՈԿՍ ներս են մտնում):*

*ՄԱԿԴՈՒՖ*

Այնչափ ո՞ւշ էր, բարեկամ, երբ պառկելու գընացէք,
Որ այսպէս ուշ վեր էք կենում:

*ԴՌՆԱՊԱՆ*

Իմ հաւատս, տէր, մենք մինչև երկրորդ աքլօրախօսը կոնծում էինք. և խմիչքը, տէր, մեծ պատճառ է երեք բանի:

*ՄԱԿԴՈՒՖ*

Ի՞նչ երեք բան է այդ, որ պատճառում է գինին:

*ԴՌՆԱՊԱՆ*

Ա՜յ ինչ, տէր. կարմիր քիթ, քուն և մէզ: Վաւաշութիւն, տէր, նա թէ յարուցանում է և թէ սպանում. պատճառում է ցանկութիւն, բայց կատարումն արգելում է: Այս պատճառով կարելի է ասել, թէ շատ խմելը պոռնկութեան հետ երկերեսանի վարմունք ունի. նրան պատրաստում է—և խափանում, նրան գրգռում է—և կրկին ընկճում, նրան հրապուրում է—և սարսափեցնելով յետ փախցնում. նրան մի դըրութեան մէջ է դնում, բայց կարողութիւնը հանում է. վերջապէս նրան երկիմաստ քնի մէջ է ձգում, և խաբէութիւն պարգևելով՝ երեսից ձգում է նրան:

*ՄԱԿԴՈՒՖ*

Երևի խմիչքը քեզ էլ այս գիշեր խաբէութիւն է պարգևել:

*ԴՌՆԱՊԱՆ*

Նա այս արաւ, տէր, և ուղղակի կոկորդիցս դէպի ներս. բայց ես վրէժն առայ, և խիստ կերպով, կարծում եմ.—թէպէտ նա մի-երկու անգամ ոտներս տակս ծալեց՝ բայց ես ստիպեցի նրան յետ գալ [1]:

---

1) Դռնապանի խօսքերը թարգմանուած են մօտաւորապէս: Բնագիրը և գերմաներէն թարգմանութիւնները լիքն են անփոխադրելի բառախաղերով ու դարձուածքներով: Հ. Թ.

ՄԱԿԴՈՒՖ

Արթնացե՞լ է արդեօք տէրդ։—
Դրան բաղխելը զարթեցրեց նրան, ահա նա գալիս է։

*(ՄԱԿԲԵԹ ներս է մտնում):*

ԼԷՆՈԿՍ

Բարի լոյս, իմ ազնիւ տէր։

ՄԱԿԲԵԹ

Բարի լոյս ձեզ երկուքիդ։

ՄԱԿԴՈՒՖ

Թագաւորը դեռ չարթնացա՞ւ, ազնիւ թէն։

ՄԱԿԲԵԹ

Դեռեւս ո՛չ։

ՄԱԿԴՈՒՖ

Նա պատուիրեց, որ իրան կանուխկեկ զարթեցնեմ.
Քիչ մնաց ուշանայի։

ՄԱԿԲԵԹ

Ձեզ նորա մօտ կըտանիմ։

ՄԱԿԴՈՒՖ

Ես գիտեմ, որ ձեզ համար հաճելի է այս նեղութիւնն,
Բայց նորից նեղութիւն է։

ՄԱԿԲԵԹ

Ցանկացուած աշխատութիւնն
Քաղցրացնում է նեղութիւնն։—Ահա դուռը։

ՄԱԿԴՈՒՖ

Պէտք է մտնեմ
Նորանից հրաման՜ չառած. ինձ նա այսպէս պատուիրեց։

*(Գնում է):*

ԼԷՆՈԿՍ

Արքան այսօր կըգընայ ասկից։

ՄԱԿԲԵԹ

Այո՛, այդպէս ասաց։

ԼԷՆՈԿՍ

Շատ անհանգիստ էր գիշերս։ Ուր որ մենք քնած էինք՝
Մրրիկից փուլ եկան ծխնելոյզներն, և ասում են՝
Հառաչանքներ և մահի ողբեր օդում լսուեցան,
Նոյնպէս և գուշակութիւն սարսափելի ձայներով
Զարհուրելի հրդեհի և պետութեանց կործանման,
Այս ծանր ժամանակում թխսուած։ Խաւար թռչունն
Ամբողջ գիշեր ճչում էր. ասում են՝ նաև երկիրն
Դողը բռնած դողում էր։

ՄԱԿԲԷԹ

Յիրաւի, խիստ էր գիշերս։

ԼԷՆՈԿՍ

Իմ մանկական յիշողութիւնս չէ կարող գտնել նորան
Նմանը։ *(ՄԱԿԴՈՒՖ յետ է գալիս):*

ՄԱԿԴՈՒՖ

Ո՜վ սարսափ, սարսափ, սարսափ: Ոչ սիրտը,
Ոչ լեզուն չեն կարող քեզ ըմբռնել կամ անուանել։

ՄԱԿԲԷԹ և ԼԷՆՈԿՍ

Ի՞նչ կայ, ասէք։

ՄԱԿԴՈՒՖ

Ոճիրը իւր գլուխ-գործոցը
Կատարեց. տաճարապիղծ սպանութիւնը խորտակեց
Աստուծոյ նուիրական սրբութիւնը, և գողացաւ
Այն շինուածքի միջից կեանքը։

ՄԱԿԲԷԹ

Ի՞նչ ասացիք դուք, կեա՞նքը։

ԼԷՆՈԿՍ

Դուք նորին մեծութեա՞ն էք ակնարկում։

ՄԱԿԴՈՒՖ

Մօտեցէք սենեակին և ձեր հայեացքը կուրացրէք

Նոր Գորգոնի [1]) տեսարանով։ Մի՛ ըստիպէք ինձ խօսիլ։
Մըտէք, և դուք խօսեցէք։
*(Մակբեթ եւ Լէնոքս մտնում՝ են Դունկանի ննջարանը)։*
Զարթեցէք, զարթեցէք,
Հընչեցրէք զանգակները։ Սպանութի՜ւն, պետական դաւ։
Բանկո՛յ, Դոնալ՛բայն և Մալ՛կոլ՛մ, զարթեցէք,
Թօթափեցէք ըրմբուլի քունն, այդ կեղծ պատկերը մահի,
Նայեցէք իսկական մահին վերայ։ Վե՛ր կացէք,
Տեսէք վերջին դատաստանի պատկերը։ Մալ՛կո՛լ՛մ, Բանկո՛յ,
Ելէք ինչպէս գագաղներից և ոգու պէս նըկատեցէք
Այս սարսափի սարսափը։—
*(Զանգակներն հնչեցնում՝ են։ ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ ներս է մտնում)։*

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Ի՞նչ պատահել է, որ այս
Սոսկալի զանգակի կոչն հրաւիրում է տան բոլոր
Քընողներին։ Խօսեցէք։

*ՄԱԿԴՈՒՖ*

Ո՜վ տիկին ազնըւական,
Դուք լըսել չէք հանդուրժի՝ ինչ որ ասել կարող եմ ես.
Կանացի լըսողութիւնն լըցնել նրանով՝ կըլինէր
Սպանութիւն գործել խօսքով։ *(ԲԱՆԿՈՑ ներս է մտնում՝)։*
Բանկո՛յ, ո՛վ Բանկոյ,
Թագաւորն ըսպանուած։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Վա՜յ, աւա՜ղ, ի՞նչ, այստե՞ղ,
Մեր տան մէջ։

*ԲԱՆԿՈՑ*

Սոսկալի է ո՛րտեղ էլ եղած լինի։—

---

1) Գորգոնայ կոչւում են Յունաց առասպելական երեք քոյրերը (Մեդուզայ, Եւրիալէս և Սթենոյ), որոնք իրանց վերայ նայողներին քար էին դարձնում։

Ո՛ սիրելի Մակդուֆ, խընդրեմ խօսքդ յետ առնես և ասես՝
Թէ այդպէս չէ։

*(ՄԱԿԲԵԹ և ԼԷՆՈԿՍ յետ են դառնում)։*

*ՄԱԿԲԵԹ*

Եթէ ես այս օրհասից մի ժամ առաջ մեռնէի՝
Երջանիկ կըլինէի ապրած. այլևս այսուհետև
Մահկանացու կեանքին մէջ չըկայ ոչինչ նուիրական.
Փուճ է այժմ ամենայն բան. մեռած են փառք և շընորհք։
Դուրս ծորեցաւ կեանքի գինին, մըրուրը միայն մընաց
Մառանին մէջ, որպէս զի սա պարծենայ նորանով։

*(ԴՈՆԱԼ՛ԲԱՅՆ և ՄԱԼ՛ԿՈԼ՛Մ ներս են մտնում)։*

*ԴՈՆԱԼ՛ԲԱՅՆ*

Ի՞նչ է կորած այստեղ։

*ՄԱԿԲԵԹ*

Դուք, և ինքներդ այդ չըգիտէք։
Աղբիւրը, աւազանն և ծագումը ձեր արեան—
Խըցուեցաւ նա, նոյն իսկ բուն աղբիւրը ցամաքեցաւ։

*ՄԱԿԴՈՒՖ*

Սպանուած է արքայական ձեր հայրը։

*ՄԱԼ՛ԿՈԼ՛Մ*

Ո՜հ, ո՞րի ձեռքով։

*ԼԷՆՈԿՍ*

Երևի սենեկապան ծառաներն են այս արել.
Նոցա ձեռներն և երեսներն ծածկուած էին արիւնով,
Նոյնպէս նոցա դաշոյններն, որ չըսրբուած մենք նոցա
Բարձերին վըրայ գըտանք։ Ցընդածի պէս նայում էին
Նոքա յառած։ Չէր կարելի նոցա ոչ մի կեանք հաւատալ։

*ՄԱԿԲԵԹ*

Ո՜, ես այժըմ զըղջում եմ իմ կատաղի կըրքիս վերայ,
Որ նոցա սպանեցի։

*ՄԱԿԴՈՒՖ*

Եւ ինչո՞ւ դուք այդ արիք։

*ՄԱԿԲԵԹ*

Ո՞վ է յուզուած և խոհեմ, պաղարիւն և կատաղի,
Հաւատարիմ և անտարբեր միանգամայն.—ոչ մի մարդ։
Իմ սաստիկ սիրու ըշտապն գանգատ բանականութիւնից
Առաջ անցաւ։ Ընկած էր այնտեղ Դունկան, արծաթէ
Նորա գըլուխն ողողուած էր իւր ոսկեղէն արիւնով.
Բաց վէրքերն նըման էին բնութեան մէջ պատառուածքի՝
Աւերումի քակտիչ մուտքին համար։ Այնտեղ սպանողներն՝
Հագած իրանց արուեստի գոյնն, իսկ դաշոյններն յանդըգնաբար
Լերդացած արիւնին մէջ։ Ո՞վ կարող էր համբերել—
Եթէ սիրող սիրտ ունի և սըրտին մէջ արութիւն—
Եւ ցոյց չըտար իւր սէրը։

*Լ. ՄԱԿԲԵԹ (ուշաթափուելով)*

Օ՜հ, օհ, տարէք ինձ դուրս։

*ՄԱԿԲԵԹ* [1])

Տիկնոջ վերայ հոգ տարէք։

*ՄԱԼԿՈԼՄ (Դոնալբայնին ցած ձայնով)*

Մենք լռո՞ւմ ենք, մինչդեռ այդ
Դըժբախտութիւնն ամենից առաջ մեզ է վերաբերում։

*ԴՈՆԱԼԲԱՑՆ (Մալկոլմին ցած ձայնով)*

Ի՞նչ պիտի ասենք այստեղ,
Ուր մեր բախտն ամեն ծակում դաւ դընելով՝ կարող է
Դուրս պայթել և խորտակել մեզ։ Դեռ մեր արտասուքներն
Հասունացել չեն [2])։

*ՄԱԼԿՈԼՄ*

Եւ մեր ծանըր վիշտը դեռ չէ կարող
Համարձակ արտայայտուել։

*ԲԱՆԿՈՑ*

Խընամեցէք տիկնին։ *(Լէդի
Մակբեթին դուրս են տանում)*:

---

1) Ոմանք՝ Մակդուֆ։ Հ. Թ.

2) Այսինքն՝ արտասուելու դեռ շատ բան ունինք սպասելու։ Հ.Թ.

Իսկ երբ գընանք և ծածկենք մերկանդամ մեր մարմինները,
Որ վնասւում են բաց օդում՝ կըրկին մէկտեղ ժողովուենք
Եւ քըննենք հիմնովին արիւնալից այս գործը։
Սարսափեցնում են մեզ երկիւղն և յուսահատութիւնը։
Աստուծոյ մեծ ձեռքի մէջ է իմ կեանքս, և ես այստեղ
Երդւում եմ մարտընչել դաւաճանող չարութեան
Գաղտամիտ ոճիրին դէմ։

*ՄԱԿԲԵԹ*

Նոյնպէս և ես։

*ԱՄԵՆՔԸ*

Ամենքս էլ։

*ՄԱԿԲԵԹ*

Արդ փութով մենք ձեռք առնենք առնացի վըճռողութիւն
Եւ դահլիճը ժողովուենք։

*ԱՄԵՆՔԸ*

Բարի, թող այդպէս լինի։

*(Ամենքը գնում են, բացի Մալ՛կոլ՛մից եւ Դոնալ՛բայնից):*

*ՄԱԼ՛ԿՈԼ՛Մ*

Ի՞նչ ես ուզում դու անել։ Չըհաւատանք մենք նոցա։
Չըզգացուած ցաւակցութիւն յայտնելը՝ մի պաշտօն է,
Խարդախին համար դիւրին։ Ես կըգնամ Անգլիա։

*ԴՈՆԱԼ՛ԲԱՅՆ*

Իսկ ես՝ դէպ՝ Իր՛լանդիա։ Երբ բաժանուենք՝ բախտը մեզ
Աւելի լաւ կըպաշտպանէ։ Ուր մենք այժմ ենք գըտնըւում՝
Դաշոյն կայ ժըպիտներին տակ։ Մարդ որչափ մօտ է արեան՝
Արիւնարբու է այնչափ։

*ՄԱԼ՛ԿՈԼ՛Մ*

Արձակուած ըսպանիչ նետն
Դեռևս գետին չէ ընկել։ Մեզ համար ապահովն է՝
Նըպատակ դառնալուց խոյս տալ։ Ուրեմն ձի հեծնենք։
Հարկ չէ մեղկանալ՝ քընքոյշ հրաժեշտ տալու համար.

Ո՛չ, հեռանանք շուտով։ Պէտք է մարդ իւր անձը գողանայ
Փրկէ այնտեղ, ուր մարդկութիւն և քրնքոյշ գութ էլ չըկայ։
(Գնում՝ են):

---

## ՉՈՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Ամրոցի դուրսը։—ՌՕՍՍ և մի ԾՆՐՈՒՆԻ ներս են մտնում։

*ԾՆՐՈՒՆԻ*

Եօթանասուն տարուց աւել է, որ ես լաւ յիշում եմ.
Այս երկար ժամանակում ես տեսել եմ սոսկալի
Պատահարներ. սակայն այս ահեղասաստ գիշերին մօտ
Խաղալիկ են իմ նախկին գիտցածներըս։

*ՌՕՍՍ*

Ա՜խ, բարի հայր,
Տես, երկինքը զայրացած մարդկային գործերին վրայ՝
Սպառնում է արիւնալից այս բեմին։ Ժամացոյցով
Առաւօտ է. բայց մութ գիշերն դեռ խեղդում է շըրջող-լապտերն։
Ցաղթանակն է գիշերի, թէ ցերեկի ամօթն է սա,
Որ խաւարը ծածկել է երկրի ճակատն, երբ սըրան
Կենդանի լոյսն համբուրել է կամենում։

*ԾՆՐՈՒՆԻ*

Անբնական,
Ինչպէս նաև հետևեալ դէպքն։ Այս վերջի երեքշաբթին
Մինչ բազէն բարձրաթռիչ սաւառնում էր օդին մէջ՝
Մի բուէճ նըրան բռնեց և կըտցահար սպանեց։
Եւ Դունկանի ձիերը—տարօրինակ բայց հաստատ—
Արագավազ և գեղեցիկ, լաւերն իրանց ցեղին մէջ՝
Կատաղելով կոտրեցին իրանց մըսուրն և փախան,
Հնազանդութիւնն անտես արած, կարծես կըռուել կամենալով
Մարդոց դէմ։

*ԾՆՐՈՒՆԻ*

Ասում են՝ նոքա միմեանց կըրծեցին։

*ՌՕՍՍ*

Ցիրաւի, այդպէս արին. չէի ուզում հաւատալ
Աչքիս՝ երբ այս տեսայ։ Ահա գալիս է քաջըն Մակդուֆ։
(*ՄԱԿԴՈՒՖ ներս է մտնում*):
Ի՞նչ նոր բան կայ աշխարհում, տէր։

*ՄԱԿԴՈՒՖ*

Դուք ինքներըդ չէ՞ք տեսնում։

*ՌՕՍՍ*

Ցայտնուեցա՞ւ ով արաւ այն աւելի քան արիւնահեղ
Գործը։

*ՄԱԿԴՈՒՖ*

Նոքա, որոնց Մակբեթ սպանեց։

*ՌՕՍՍ*

Ո՞վ երկինք։
Ի՞նչ էր նոցա նըպատակն։

*ՄԱԿԴՈՒՖ*

Կաշառուած էին նոքա։
Մալ՚կոլ՚մ և Դոնալ՚բայն, թագաւորի երկու որդիքն,
Գաղտնի փախան այստեղից. սա ձըգում է նոցա վերայ
Կասկածանք գործի մասին։

*ՌՕՍՍ*

Միշտ բընութեան հակառակ։
Անպըտաուղ փառասիրութիւն, որ կողոպտում ես ինքնին
Սեփական կեանքիդ միջոցն։—Այժմ ուրեմն հաւանօրէն
Արքայական իշխանութիւնն Մակբեթի՞ն կըվիճակուի։

*ՄԱԿԴՈՒՖ*

Ընտրըւած է նա արդէն և Սկօնայ է ուղևորւում,
Որ այնտեղ թագադըրուի։

*ՌՕՍՍ*

Դունկանի դիակն ո՞ւր է։

*ՄԱԿԴՈՒՖ*

Փոխադրուած է Կոլ՚մսկիլլ սուրբ շիրիմը, ուր հանգչում են
Նորա նախնեաց ոսկերքը։

ՌՕՍՍ

Դուք Սկօնայ պիտի գընաք։

ՄԱԿԴՈՒՖ

Ո՛չ, բարեկամ, Ֆայֆ եմ գնում։

ՌՕՍՍ

Գեղեցի՛կ. ես էլ այնտեղ։

ՄԱԿԴՈՒՖ

Շատ բարի։ Ո՜ւր էր գործերն այնտեղ լաւ ընթանային։
Նոր հանդերձը խիստ հագիւ լաւ է նըստում ինչպէս հինը։

ՌՕՍՍ

Մնաք բարով, հայրիկ։

ԾԵՐՈՒՆԻ

Աստուած պահէ ձեզ և ազնիւ մարդուն,
Որ թըշնամին՝ բարեկամ, չարը բարի է դարձնում։
(Բոլորը գնում են):

---

## ԵՐՐՈՐԴ ԱՐԱՐՈՒԱԾ



### ԱՌԱՋԻՆ ՏԵՍԱՐԱՆ

Ֆօրս։ Պալատում մի սենեակ։—ԲԱՆԿՈՅ ներս է մտնում։

ԲԱՆԿՈՅ

Դու—թագաւոր, Կաւդոր, Գլ՛ամիս. ունիս այժմ այն ամենը,
Ինչ որ քեզ գուշակեցին կախարդ կընները։ Ես վախում եմ,
Որ խարդախ խաղ խաղացիր այս պատճառով։ Բայց ասուեցաւ,
Որ սերընդիդ վերայ սա չըպիտի շարունակուի,
Բայց որ ես պիտի լինիմ արմատ և հայր բազմաթիւ
Թագաւորաց։ Իսկ եթէ ճըշմարիտ է նըրանց խօսքն—
Եւ նըրանց խօսքը, Մակբեթ, քո մէջ գըտաւ ապացոյց—

Ինչո՛ւ համար, երբ նըրանք քո բախտն ուղիղ ասացին՝
Չեն կարող ճըշմարիտ գուշակ լինել և ինձ համար
Եւ ինձ յուսով բարձրացնել։—Լո՛ւռ, այս մասին ոչինչ ասել։

*(Թմբկի ձայն: ՄԱԿԲԵԹ, իբրև թագաւոր, ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ, իբրև թագուհի, ԼԷՆՈԿՍ, ՌՕՍՍ, ԼՈՐԴԵՐ, ՏԻԿԻՆՆԵՐ և ԾՔԱԽՈՒՄԲԸ ներս են մտնում):*

ՄԱԿԲԵԹ

Ահա աւագ մեր հիւրը։

Լ. ՄԱԿԲԵԹ

Եթէ նա պակաս լինէր՝
Պակասաւոր կըլինէր մեր մեծ խընջոյքն և անվայել։

ՄԱԿԲԵԹ

Երեկոյեա հանդիսաւոր ընթրիք կըտանք մենք, որտեղ
Ցանկանում ենք, տէր, և ձեր ներկայութիւնն։

ԲԱՆԿՈՅ

Ձեր մեծութիւնն
Թող հրամայէ ինձ. նորա հետ հնազանդութեան իմ պարտքերս
Մըշտընջենապէս պըրկուած են անխըզելի և հաստատուն
Կապերով:

ՄԱԿԲԵԹ

Ճաշից յետո՞յ պիտի գնաք։

ԲԱՆԿՈՅ

Այո՛, տէր իմ։

ՄԱԿԲԵԹ

Այլապէս՝ կըցանկայինք ձեր խորհուրդները լըսել —
Որոնք միշտ ծանրակշիռ և յաջողակ են եղել—
Այս աւուր ակումբին մէջ։ Բայց կարելի է այս թողնել
Մինչև վաղն առաւօտ։—Հեռո՞ւ տեղ պիտի գընաք։

ԲԱՆԿՈՅ

Այնչափ հեռու է, տէր իմ, որ կըգրաւէ մինչև ընթրիք
Եղած բոլոր միջոցը։ Բայց եթէ ձիս արագ չերթայ՝

Ես ըստիպուած կըլինիմ խաւարի մի երկու ժամ
Փոխ առնել գիշերից։

ՄԱԿԲԵԹ

Մեր խընջոյքից յետ չըմընաք։

ԲԱՆԿՈՅ

Ո՛չ, տէր իմ. ես յոյս ունիմ անշուշտ ներկայ գըտնուելու։

ՄԱԿԲԵԹ

Մենք լըսեցինք, որ փախան մեր ոճրագործ ազգականներն
Իրլ՛անդիա և Անգլիա, չեն յանձն առնում սոսկալի
Ըսպանութիւնն և լըցնում են լըսողների ականջներն
Տարօրինակ առասպելով։ Բայց այս մասին առաւօտ,
Երբ բացի այս՝ պետական գործերը մեզ կըհրաւիրեն
Ծանրակըշիռ խորհելու։ Շուտ ձի հեծէք։ Գնաք բարով.
Ցըտեսութիւն մինչ երեկոյ։—Ձեզ հետ կըգայ նաև Ֆլինս։

ԲԱՆԿՈՅ

Այո՛, բարի տէր իմ. մեզ փութացնում է ժամանակն։

ՄԱԿԲԵԹ

Ցանկանում եմ ձիերիդ արագութիւն և հաստատ քայլ
Եւ յանձնում եմ ձեզ նոցա կըռնակներին։ Բարեյաջող
ճանապարհ։ *(Բանկոյ գնում է: Միւսներին):*
Թող ամեն ոք տէր լինի իւր ժամանակին
Մինչ եօթըն ժամն երեկոյի։ Որպէս զի ձեր ընկերութիւնն
Մեզ աւելի հաճոյ լինի՝ մենք ուզում ենք մենակ մնալ
Մինչև այն ժամանակը։ Իսկ առ այժմ Աստուած ձեզ հետ:
*(Բոլորը գնում են, բացի Մակբեթից և մի ծառայից):*
*(ծառային)* Է՜յ, բարեկամ, ձեզ մի խօսք. ըսպասո՞ւմ են այն մարդերն։

ԾԱՌԱՅ

Այո՛, տէր իմ, պալատի դըրան ըսպասում են նոքա։

ՄԱԿԲԵԹ

Բերէք նոցա մեր առջև։ *(ծառան գնում է):* Այս լինելը ոչինչ է,
Բայց ապահով լինել *այս:* Մեր երկիւղը Բանկոյից

Խորն է. Նոր „ արքայական բնութեան մէջ տիրում է այն՝
Որ մեզ երկիւղ է ազդում։ Նա շատ բարձր ձըգտում ունի,
Եւ բացի անընկճելի դիւցազնական արութիւնից՝
Խոհեմութիւն ունի նա, իւր քաջութեան ղեկավար
Դէպ՝ ապահով ձեռնարկութիւն։ Նորանից զատ ոչ ոք չըկայ,
Որի ես գոյութիւնից վախենամ, և նորա մօտ
Ծընշըլւում է իմ հոգիս նըման, ինչպէս ասում են՝
Անտոնիոս Մարկոսին Կեսարի մօտ։ Յանդիմանեց
Նա քոյրերին, երբ սըրանք նախ ինձ կոչեցին թագաւոր,
Եւ պատուիրեց՝ իրան համար էլ խօսիլ գուշակաբար։
Նըրանք նրան ողջունեցին իբրև հայր թագաւորաց։
Գօսացած թագով նըրանք պըսակեցին իմ գըլուխս
Եւ իմ ձեռքըս տըւին անպըտղաբեր գայիսոն,
Որպէս զի օտարացեղ մի ձեռք նըրան յափըշտակէ,
Եւ ես որդի չունենամ ինձ յաջորդող։ Ապա ուրեմն
Ես իմ սիրտս աղտեղեցի Բանկոյի ցեղին համար,
Նոցա համար մորթեցի առատաշնորհ Դունկանին,
Խըղճի խայթ խառնեցի խաղաղութեան բաժակիս մէջ՝
Միմիայն նոցա համար։ Անմահական իմ գանձըս
Մարդկութեան ընդհանուր թըշնամու ձեռքը մատնեցի՝
Որ նոցա պըսակեմ, պըսակեմ Բանկոյի ցե՜ղն։
Բայց յառաջ քան այս լինի՝ ճակատագի՛ր, եկ, կըռուի ել
Եւ մարտակցիր ինձ ծայրայեղ մըրցումիս մէջ։—Ո՞վ է այդ։
*ԾԱՌԱՆ վերադառնում է ԵՐԿՈՒ ՄԱՐԴԱՍՊԱՆԻ հետ)։*

*ՄԱԿԲԵԹ (ծառային)*

Գընա դուռը և այնտեղ ըսպասիր մինչև կանչեմ։ *(ծառան գնում է)։*
Երեկուայ օրը չէ՞ր, որ միմեանց հետ մենք խօսեցանք։

*Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Այդպէս է, համաձայն ձեր մեծութեան կամքին։

*ՄԱԿԲԵԹ*

Լաւ.
Ասածներիս մասին լաւ մըտածեցէ՞ք այժըմ։ Գիտցէք,

Նա՛ էր, որ ձեզ այն անցած ժամանակները պահում էր
Ճընշումի տակ, և ոչ թէ, ինչպէս դուք կարծում էիք՝
Մեր անմեղ անձն. Ես ձեզ այս բացատրեցի մեր նախորդ
Խօսակցութեան ժամանակ, ձեզ ցոյց տուի, թէ ինչպէս
Խաբում էին ձեզ և ցանում, թէ ո՛վ էին գործիքներն
Եւ ո՛վ նոցա գործածում, և միւս բաներն էլ՝ որ նոյն իսկ
Ցընդած-ուղեղ ծանծաղամիտ խելագարը կըվըկայէր,
Թէ Բանկոյ է այս անողն.

Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Մենք լըսեցինք այդ ամենն.

ՄԱԿԲԵԹ

Ցոյց տալով այս՝ ես աւելի առաջ գնացի և հասայ
Մեր այժմեան խորհրդածութեան կէտին. Մի՞թէ դուք
օժտուած էք
Այն աստիճան անսահման համբերութեամբ, որ թոյլ տայիք
Այս այսպէս մընալու, կամ երկիւղած էք այնչափ,
Որ աղօթէք այս բարի մարդին և իւր ցեղին համար,
Որի ծանըր ձեռքը ձեզ մինչև ի մահ չարչարեց
Եւ ձեր որդիքն մուրացկան դարձրեց ընդ միշտ.

Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Տէր, մարդ ենք մենք.

ՄԱԿԲԵԹ

Այո՛, դուք ցանկին մէջ նըշանակուած էք իբրև մարդ,
Ինչպէս նաև՝ բարակ, որսկան, քօթոտ, գամփռ, ընթացիկ,
Բակի շունը, ջըրի շունն և հօտի շունը—բոլոր սոքա
Շուն են կոչւում, և միայն աստիճանի ցուցակը
Որոշում է՝ ո՛րն է արագ, ո՛րը դանդաղ, ո՛րը ճարպիկ,
Տուն պահպանող և որսորդ, և այսպէս իւրաքանչիւրն
Իւր ձիրքերին նայելով, որ բարեգութ բընութիւնն
Ամփոփել է նոցա մէջ, որով սոքա ընդունում են
Իրանց յատուկ կոչումներ բացի ցանկից, որ ամենին
Նոյն անունովն է գըրում. Նոյնն է նաև մարդուս հետ.
Եթէ դուք՝ տեղ էք բռնում այս ընտրելեաց ցանկին մէջ,

Եւ ոչ թէ մարդկութեան մէջ վերջին տեղը՝ խօսեցէք.
Եւ ըստ այնմ ես ձեր սրտում մի այնպիսի գործ կըդընեմ,
Որ նորա կատարումը ձեր թշնամուն ի բաց վանէ
Եւ մեր սրտին ու սիրուն ձեզ պինդ ու պինդ կապակցէ։
Եթէ նա ապրելիս վիրաւորում է մեր հանգիստն՝
Ուրեմըն կառողջանայ նորա մահով։

Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Ես մի մարդ եմ,
Տէր իմ, որին աշխարհի խըստըմբեր ծեծ ու հարուածներն
Այն աստիճան են բորբոքել, որ անփոյթ եմ՝ ինչ էլ գործեմ՝
Աշխարհը ծաղր անելու համար։

Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Իսկ ես մի ուրիշն,
Դժբախտութեամբ այնչափ ցընցուած և խարըալուած ճա-
կատագրից՝
Որ պատրաստ եմ կեանքս ենթարկել որևիցէ պատահարի՝
Որ կամ այն բարելաւեմ կամ ազատուիմ։

ՄԱԿԲԵԹ

Երկուքդ էլ
Այժմ իմացաք, որ Բանկոյ ձեզ թշնամի էր։

Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Այո՛, տէր։

ՄԱԿԲԵԹ.

Նոյնպէս և ինձ, և այնչափ մօտ արիւնալից տարածութեամբ
Որ նորա գոյութեան իւրաքանչիւր մի վայրկեանն
Կեանքիս խորն է ծակծակում։ Կարող էի ես նըրան
Իմ բացարձակ զօրութեամբ ջընջել վերցնել աշխարհից
Իմ կամքիս իրաւունքով. բայց չեմ ուզում այս անել
Մի քանի բարեկամի համար, որ իմս և նորանն են,
Որոնց պէտք է խընայեմ։ Ես դեռ պիտի ողբամ էլ
Նըրան, որին հէնց ես ինքս ըսպանեցի։ Այս պատճառով
Ահա ես ձեր օգնութիւնը խընդրում եմ թախանձելով,

Որ այս գործը ծածկըւի ընդհանրութեան աչքերից
Մի քանի կարեւոր պատճառներով։

*Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Տէր իմ, մենք
Կըկատարենք՝ ինչ որ մեզ հրամայեցիք։

*Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Թող մեր կեանքը...

*ՄԱԿԲԵԹ*

Արիութիւն է փայլում ձեր աչքերում։ Ես մի ժամից
Ձեզ ցոյց կըտամ թէ ո՛րտեղ դարանի պիտի կանգնիք,
Կըբացատրեմ ձեզ նաեւ յարմարաւոր ժամանակն,
Ակընթարթն իսկ։—Պէտք է սա հէնց այս գիշեր կատարուի,
Եւ պալատից փոքր ինչ հեռու։ Դուք յիշում էք իմ ասածս,
Որ կասկածի ես չեմ ուզում ենթարկուել։ Եւ նորա հետ—
Որպէս զի գործում չըմնայ ո՛չ ծակուճեղ, ոչ կարկատան—
Թող Ֆլինս եւս, նորա որդին, որ ուղեկցում է նորան,
Եւ որի կորուստը ինձ ոչ պակաս է կարեւոր
Քան նորա հօրն՝ թող նա եւս խաւարային այն ժամի
Ճակատագրին ենթարկուի։ Վըճռեցէք ուրեմն շուտով.
Ես հէնց հիմա կըդառնամ։

*Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Տէ՛ր, մենք արդէն վըճռեցինք։

*ՄԱԿԲԵԹ*

Ես ձեզ շուտով կըկանչեմ. դուրսն այդտեղ ըսպասեցէք։
(*Մարդասպանները գնում՝ են*):
Օ՜ն, եղաւ։ Այժըմ, Բանկոյ, հոգ տար հոգուդ։ Եթէ նա
Երկինք լինի գընալու՝ հէնց այս գիշեր կըգընայ։ (*Գնում՝ է*)։

---

## ԵՐԿՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

*Նոյն տեղում. Մի ուրիշ սենեակ.—ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ և մի ԾԱՌԱՅ ներս են մտնում.*

Լ. ՄԱԿԲԵԹ

Պալատը թողե՞ց Բանկոյ։

ԾԱՌԱՅ

Այո՛, տիկին, բայց կըրկին նա կըդառնայ գիշերուայ դէմ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Թագաւորին ասա, թէ ես ըսպասում եմ իւր հաճութեան
Մի քանի խօսքի համար։

ԾԱՌԱՅ

Պատրաստ եմ, տիրուհի։ *(Գնում է)*։

Լ. ՄԱԿԲԵԹ

Դեռ ոչինչ ձեռք չըբերուած՝ ամեն բան խաբէութիւն.
Մեր բաղձանքը կատարուած, բայց չըկայ անդորրութիւն.
Լաւ է լինել այն, որ մենք կործանեցինք, քան շարունակ
Երկիւղախառն ուրախութիւնն, կործանումի կասկածի տակ։
*(ՄԱԿԲԵԹ ներս է մտնում)*։
Ի՞նչ նոր բան կայ, իմ ամուսին. ինչո՞ւ լինում ես միայնակ
Եւ ընտրում քեզ ուղեկից՝ տըխրեցուցիչ պատկերներն.
Որոճում ես խորհուրդներ, որ մեռնէին պէտք է վաղուց
Նորա հետ, որի մասին են խորհում։ Անդառնալի
Գործը պէտք չէ էլ գըննել։ Պատահածը պատահած է։

ՄԱԿԲԵԹ

Օձը՝ միայն վիրաւորուեց, բայց մենք նորան չըսպանեցինք.
Նա կողջանայ և կըդառնայ նոյնը, և մեր չարութեան
Նա դարձեալ կըսպառնայ իւր թունաւոր ատամով։
Բայց թող քանդուի շէնքը երկրի, թող կործանի երկու աշխարհ՝
Քան մեր հացն ահուդողի մէջ ուտենք և քուն լինենք
Այս սոսկալի երազների ճընշումին տակ, որ գիշերներն
Մեզ ցընցում են միշտ։ Լաւ է այն մեռածին մօտ լինել,

Որին հանգիստ պարգևեցինք՝ որ ինքներս էլ գտնենք հանգիստ,
Քան թէ պառկինք մենք հոգու տանջանարանին վերայ
Մըշտայոյզ տանջանքներում։ Դագաղի մէջ է Դունկան,
Անցաւ նորա կեանքի ջերմը և նա քնում է հանգիստ.
Դաւն իւր բոլոր չարիքը նորան հասցրեց։ Ո՛չ սուր, ո՛չ թոյն,
Ո՛չ ընտանի ոսոխութիւնն, ո՛չ օտարի յարձակմունքն—
Ոչինչ նըրան էլ չէ կարող դըրդուել։

Լ. ՄԱԿԲԷԹ

Գնա՛նք, իմ ամուսին.
Փարատիր խորշոմները երեսիդ, խընդումերես
Եւ ուրախ եղիր գիշերս հիւրերիդ հետ։

ՄԱԿԲԷԹ

Կաշխատիմ,
Իմ սիրելիս. նոյնպէս եղիր, խընդրեմ, դու էլ։ Բոլոր ուշքըդ
Բանկոյի վերայ դարձրու. հայեացքով ու խօսքերով
Պատուիր նըրան կըրկնակի։ Քանի որ դեռ ապահով չենք՝
Պէտք է լըւանք մեր պատիւն՝ շողոքորթող վըտակներով
Եւ մեր դէմքերն դիմակ շինենք սըրտերիս, ու կեղծելով
Ծածկենք, թէ ինչ են նոքա։

Լ. ՄԱԿԲԷԹ

Թո՛ղ, մոռացիր այս ամենն։

ՄԱԿԲԷԹ

Ո՜հ, լի է կարիճներով սիրտըս, ո՜վ սիրելի կին։
Դու գիտես, որ Բանկոյ և իւր Ֆլինսը կենդանի են։

Լ. ՄԱԿԲԷԹ

Բայց նոցա մէջ անվախճան չէ պայմանագիրը կեանքի։

ՄԱԿԲԷԹ

Եւ այդ է իմ մըխիթարանքս, որ նոքա չեն անհըպելի։
Ուրեմն ուրախ եղիր դու. առաջ քան թէ չըղջիկը
Իւր մենաւոր թըռիչքը կըկատարէ, և Հէկատի
Կոչելուն՝ եղջերաթև բըզէզը իւր քընաբեր
Բըզզանքով կըհընչեցնէ մեղամաղձոտ գիշերաժամն՝
Մի ահեղ գործողութիւն կըկատարուի։

*Ղ. ՄԱԿԲԵԹ*

Ինչ է այդ։

*ՄԱԿԲԵԹ*

Անմեղ եղիր այս խորհրդին անգիտութեամբ, իմ աղաւնեակ,
Մինչև գործին խընդակցիս։ Խաւարամած գիշեր, եկ
Եւ կուրացրու մեղմ ու քընքոյշ լոյս-ցերեկի կարեկից աչքն,
Եւ ջընջիր քո անտես, արիւնալից ձեռներովդ,
Փըշուր-փըշուր պատառիր դու այն մեծ պարտամուրհակն,
Որից այսպէս տըժգոյն եմ ես։ — Մութն ընկնում է, և ագռաւն
Ուղղում է իւր թըռիչքը դէպի անտառն ագռաւալից.
Թըմրած են արդ և դադրած օրուան բարի առարկաներն։—
Ապշած կեցիր ես. իմ խօսքս լըսիր հանդարտ, անխըռով.
Ինչ բան որ չար ըսկըսուեց՝ կըլաջողի չարութիւնով։
Այժըմ գընանք միասին, խընդրում եմ քեզ։

---

## ԵՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Նոյն տեղում։ Ծառուղի, որ տանում է դէպի պալատը։—ԵՐԵՔ ՄԱՐԴԱՍՊԱՆ ներս են մտնում։

*Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Բայց քեզ ո՞վ հրամայեց, որ միանաս մեզ հետ։

*Գ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Մակբեթ։

*Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Հարկ չէ մեզ նորա մասին կասկածել, քանի որ նա
Մի առ մի պատմեց այստեղ մեր պաշտօնն ու պատուէրը
Եւ գործի ուղղութիւնը։

*Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Արևմուտքում ճաճանչում է դեռ օրուան մի ճառագայթ։
Ուշը մնացած ուղևորն խըթում է ձին այժմ ըշտապով,
Որ տեղ հասնի ժամանակին։ Եւ արդէն մօտենում է
Նա, որին դարանում ենք մենք։

Գ. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Լո՛ւռ, ձիու ոտնաձայն։

ԲԱՆԿՈՑ (բեմի ետեւից)

Լո՜յս բերէք այստեղ, է՜յ [1]։

Գ. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Նա է ուրեմն։ Միւսները,
Որ հրաւէրի ցուցակին մէջ կային՝ արդէն ժողովուած են
Պալատում։

Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Նոցա ձիերն ճանապարհը փոխում են։

Գ. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Մօտ մի մղոն այստեղից։ Բայց նա ունի սովորութիւն,
Ինչպէս նաեւ ամենքը՝ որ հետիոտն է գընում
Այստեղից մինչեւ պալատն։ (ԲԱՆԿՈՑ եւ նորա առաջից
ՖԼԻԷՆՍ մի լապտեր բռնած ներս են մտնում):

Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Լո՛յս, լո՛յս։

Գ. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Նա ինքն է։

Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ

Ամուր կացէք։

ԲԱՆԿՈՑ

Այս գիշեր պիտ՝ անձրեւէ։

Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ (դուրս թռչելով)

Թող գայ ուրեմն։

(Յարձակւում են Բանկոյի վերայ):

ԲԱՆԿՈՑ

Դաւադրութի՛ւն։—Փախի՛ր, հոգուս հատոր Ֆլիէնս, փախի՛ր,
փախի՛ր,

---

1) Ֆօսսի թարգմանութեան մէջ այստեղ փոքր ինչ տարբեր է։ Բանկոյ երեւում է բեմի ներսում մի լապտերով, որ տանում են նորա առաջից։ Գ. Մարդասպանն ասում է. Ահա լոյս երեւեցաւ, էյ։

Դուն ինձ համար վըրէժխընդիր կըլինիս — Ո՜վ ըստրուկ։

*(Մեռնում է։ Փլինս խույս է տալիս)։*

*Գ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Ո՞վ մարեց լապտերը։

*Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Միթէ պէտք չէր այսպէս անել։

*Գ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Մէկը միայն վար ընկաւ. Նորա որդին խոյս տըւեց։

*Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Գործի կէսը միայն արինք. պակասում է լաւագոյնն։

*Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Է՜հ, գընանք և յայտնենք՝ ինչ որ անել կարողացանք։

*(Գնում են)։*

---

## ՉՈՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Պալատի գահասենեակում. Պատրաստուած սեղան։ — ՄԱԿԲԵԹ, ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ, ՌՕՍՍ, ԼԷՆՈԿՍ, ԼՈՐԴԵՐ և ՇՔԱԽՈՒՄԲԸ ներս են մտնում։

*ՄԱԿԲԵԹ*

Դուք գիտէք ձեր աստիճաններն. նըստեցէք։ Մէկ անգամից
Ձեզ ողջունում եմ սըրտագին։

*ԼՈՐԴԵՐ*

Շնորհակալ ենք ձեր մեծութեան։

*ՄԱԿԲԵԹ*

Մենք ինքներս կամենում ենք մեր հիւրերի մէջ խառնուել
Եւ կատարել հիւրասէր տանուտէրի պաշտօնը։
Մեր տիրուհին արդէն բռնել է իւր տեղն. բայց կըցանկանք
Մենք յարմար ժամանակին լըսել նէրա ողջոյնն ևս։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Տէր, իմ կողմից այն յայտնեցէք մեր բոլոր բարեկամաց՝

Ինչ որ իմ սիրտըս ասում է ամենքին.—բարով եկաք։
(*Հիւրերը խոնարհութիւն են անում։ ԱՌԱՋԻՆ ՄԱՐԴԱՍՊԱՆԸ ներս է մտնում*)։

*ՄԱԿԲԵԹ*

Նոցա սրտերը, նայիր, շնորհակալ են լինում քեզ։—
Սեղանի երկու կողմն էլ լիքն են։ Իսկ ես այս մէջ տեղում
Կընդստիմ։ Ուրախ եղէք։—Հէնց իսկոյն մենք կըխըմենք
Սեղան-բոլոր բաժակը։—(*Մարդասպանին մօտենալով*)։
Արիւն կայ երեսիդ վրայ։

*ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Ուրեմըն Բանկոյինն է։

*ՄԱԿԲԵԹ*

Աւելի լաւ է քո վերադ,
Քան նորա երակներում։ Վերջացրէ՞ք նորա բանը։

*ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Նորա վիզը կտրած է, տէր։ Ես այս արի նորա սիրուն։

*ՄԱԿԲԵԹ*

Ամենալաւ ճիտ-կըտրողն ես դու, բայց լաւ է նոյնպէս նա,
Որ նոյնն արաւ Ֆլինսին հետ. եթէ դու ես այս անողն՝
Աննըման ես։

*ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Արքայական մեծութիւն, Ֆլինսը փախաւ։

*ՄԱԿԲԵԹ*

Դարձաւ կըրկին հիւանդութիւնս. այլապէս առողջ էի,
Ամուր, ինչպէս մարմարիոն, և հիմնամուր, ինչպէս ժայռն,
Այնպէս ազատ և անձնիշխան, ինչպէս օդի պըտոյտներն։
Բայց այժըմ կաշկանդուած եմ ես, կապուած եմ և ճընշուած
Երկիւղով, կասկածներով։—Իսկ Բանկոն ապահո՞վ է։

*ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Այո, տէր իմ, մի փոսի մէջ նա պառկած է ապահով,
Եւ քըսան խոր վէրքերով գըլխին վերայ. փոքրագոյնը
Մահացու է կեանքի։

ՄԱԿԲԵԹ

Քեզ շնորհակալ եմ այս մասին։
Ծեր օձն արդէն ըսպանուած է. իսկ ճըճին—նա խոյս տըւեց։
Ունի բնութիւն՝ ժամանակով թոյն նիւթելու, բայց առ այժմ
Ատամներից զուրկ է։—Գնա, վաղը երկար կըխօսինք,
Երբ մենք մեզի կըլինինք։ (*Մարդասպանը գնում է*):

Լ. ՄԱԿԲԵԹ

Ո՜վ իմ տէր արքայաշուք,
Դուք անհոգ էք։ Այն խընճոյքը վըճարուածի է նըման՝
Երբ տանուտէրն յաճախակի ցոյց չըտայ իւր հիւրերին,
Թէ տալիս է յօժար։ Ուտել՝ տանն էլ կարելի է.
Իսկ տանից դուրս՝ ապընջական սէրն է նորա համեմողն,
Առանց որին անշուք է նա։

ՄԱԿԲԵԹ

Ո՜վ սիրելի յուշարար։—
Թող ուրեմն ախորժակին հետեւի մարսողութիւն,
Եւ երկուքին՝ առողջութիւն։

ԼԷՆՈԿՍ

Հաճեցէք նըստել, արքայ։
(*ԲԱՆԿՈՅԻ ՈԳԻՆ բարձրանում նստում է Բանկոյի տեղում*):

ՄԱԿԲԵԹ

Երկրի բոլոր զարդերն այստեղ հաւաքուած կըլինէին՝
Եթէ ներկայ լինէր նաեւ մեր սիրելի Բանկոյի անձն։
Բայց կուզէի ես նըրան սառնութեան մէջ մեղադրել,
Քան թէ ցաւել դըժբախտութեանը վերայ։

ՌՕՍՍ

Տէր իմ, նորա
Բաց՚կայութիւնն կըշտամբանք է խոստումին։ Բայց չի՞ հաճի
Ձեր մեծութիւնն բախտաւորել մեզ այժըմ իւր ընկերութեամբ։

ՄԱԿԲԵԹ

Սեղանը լիքն է։

ԼԷՆՈԿՍ

Այստեղ, տէր, մի ազատ տեղ կայ։

ՄԱԿԲԵԹ

Ո՞րտեղ։

ԼԷՆՈԿՍ

Այստեղ, տէր իմ։—Ի՞նչ բան այդպէս սարսեցնում է ձեր մեծութեան։

ՄԱԿԲԵԹ

Ո՞վ ձեզանից այս արաւ։

ԼՈՐԴՆԵՐ

Ի՞նչ բան ձերդ մեծութիւն,

ՄԱԿԲԵԹ (ոգուն)

Դու չես կարող ասել, թէ ես արի այս. մի՛ թօթուեր
Իմ վերաս քո արիւնոտ գանգուրներդ։

ՌՕՍՍ

Ազնուականներ,
Վեր կացէք. արքայական մեծութիւնը տկար է։

Լ. ՄԱԿԲԵԹ

Նստէ՛ք, ազնիւ բարեկամներ. թագաւորին հետ յաճախ
Լինում է այս. մանկութիւնից ի վեր է։ Խնդրեմ նստէք։
Երկարատև չէ իւր այս նոպան, և նա մի բոպէից
Վերստին կըկազդուրուի։ Եթէ վերան ուշ դարձնէք՝
Սրանով նըրան կըզըրգռէք, կաւելացնէք նորա ցաւն։
Կեր ու խումն արէք և մի՛ նայիք վրան։—(Մակբեթին)
Դուք էլ մա՞րդ էք։

ՄԱԿԲԵԹ

Այո՛, մինչև իսկ արի, որ կարող է նայել այն
Բանին վերայ, որից դևն էլ կըսարսափի։

Լ. ՄԱԿԲԵԹ

Ի՜նչ ապրանք։
Սոքա միայն երևոյթներ են, ձեր վախից առաջացած,
Սա դաշոյնն է օդից քաշուած, որ ձեզ, ինչպէս ինքներդ ասիք՝

Դունկանի մօտ առաջնորդեց։ Օ՜հ, այս դողերն, այս սարսափներն —
Ծէշտ երկիւղի կեղծ պատկերներ—սոքա յարմար են գալիս
Պառաւական հէքեաթներին, որ ձըմեռը վառարանի
Կըշտին մեծ-մայրն հեղինակում է։ Ո՜հ, ձեզ ամօթ է այս։—
Ինչո՞ւ այդպէս ծըամըռում էք ձեր երեսն։ Եւ վերջապէս
Սա մի լոկ աթոռ է, որին այդպէս նայում էք։

*ՄԱԿԲԵԹ*

Այստեղ նայիր, տե՛ս, այնտեղ, ահա՛։ Այժմ ի՞նչ կասես դու։
(*Բանկոյի ոգուն*)
Եթէ մեզ գերեզմանն ու դամբարանն յետ են դարձնում
Թաղածներիս՝ այն ժամանակ թող մեր շիրիմը լինի
Անգղների որովայնը։ (*Ոգին անհետանում է*)։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Ի՞նչ, արութիւնն բոլորովի՞ն դուք կորցրիք խելարութեամբ։

*ՄԱԿԲԵԹ*

Ինչպէս որ ես կանգնած եմ այստեղ՝ այնպէս էլ նրան տեսայ։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Թո՛ւ ամօթ։

*ՄԱԿԲԵԹ*

Թափւում էր արիւն նաև հին ժամանակ,
Երբ օրէնքն ընկերական դեռ չէր հարթել խաղաղ կեանք։
Այո՛, նաև նրանից յետոյ պատահել են սպանութիւններ,
Ականջի զարհուրելի։ Սակայն այն ժամանակներն՝
Երբ գլուխը կտրըւէր՝ մարդն էլ իսկոյն կըմեռնէր,
Եւ բանը կըվերջանար։ Այժըմ նոքա վեր են կենում
Դարձեալ, քըսան մահացու վէրք կըրելով իրանց գլխին
Եւ մեզ հալածում են աթոռից։ Սա աւելի
Անսովոր է, քան այսպիսի սպանութիւնն։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Իմ ազնիւ տէր,
Ձեր պատուելի բարեկամներն կարօտ են ձեզ։

*ՄԱԿԲԵԹ (Լ. Մակբեթին)*

Մոռացա՜յ։ *(Հիւրերին)*

Իմ վերաս մի զարմանաք, մեծարգոյ բարեկամներ,
Տարօրինակ մի ախտ ունիմ ես, որ ինձ ճանաչողին
Ոչինչ բան է։ — Ձեր ամենիդ յաջողութեանն և սիրուն։
Ես էլ հիմայ կընստիմ։ Գինի տուէք, լիքը լցրէք։
Խըմում եմ ընդհանուր սեղանակցաց կենացը,
Նոյնպէս և մեր թանկագին Բանկոյի, որ այստեղ չէ։
Ո՜ւր էր, ներկայ լինէր նա։ *(Ոգին նորից երևում է)*:
Ամենքիդ և նորա կենաց.
Ամենքիդ ամենայն ինչ։

*ԼՈՐԴՆԵՐ*

Շնորհակալ ենք, և՛ ձեր կենաց։

*ՄԱԿԲԵԹ (Ոգուն)*

Կորի՛ր, աչքիցըս չըքուի՛ր. Թող քեզ անդունդը պարտակէ։
Ծուծ չըկայ ոսկորներիդ մէջ, պաղ է քո արիւնը,
Տեսողութիւն էլ չունիս աչքերիդ մէջ, որ այդպէս
Սևեռում ես։

*Լ. ՄԱԿԲԵԹ (Հիւրերին)*

Ազնըւական իշխաններ, համարեցէք
Սովորական սա մի բան, որ աւելի ոչինչ է,
Բայց միայն խանգարում է մեր այժմեան ուրախութիւնն։

*ՄԱԿԲԵԹ (Ոգուն)*

Մարդ ինչ բանի համարձակում է՝ ես էլ եմ համարձակում։
Ե՛կ իմ վերաս Ռուսաստանի թաւամազ արջի ձևով,
Կամ զրահաւոր ռընգեղջիւրի, կամ ինչպէս վագրը Վըրկանի.
Եկ ինչ դէմքով կամենաս, բացի դրանից, — և իմ ջըղերս
Անյողդողդ կըմընան. կամ վերըստին կենդանացիր
Եւ հրաւիրիր ինձ անապատ՝ քեզ հետ սըրով կըռուելու։
Եթէ խոյս տամ քեզանից ահուդողով՝ ապա կոչիր
Ինձ աղջկան խաղալիկ։ — Կորի՛ր, ըստուեր սոսկալի,
Կենսազուրկ ճիւաղ, չըքուի՛ր։ *(Ոգին անհետանում է)*:

Հա՛, այդպէս։—Հէնց նա գընաց՝
Եւ ես կըրկին մարդ դարձայ։—Նըստէք հանգիստ, խընդրում եմ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Դուք մեր խընջոյքն և զըւարթ զըւարճութիւնն խանգարեցիք
Տարօրինակ այդ վարմունքով։

ՄԱԿԲԵԹ

Կա՞ն այս տեսակ առարկաներ,
Եւ կարո՞ղ են մեր վերայ գալ, ամառնային ինչպէս ամպն,
Առանց մեր մասնաւոր հիացումին։ Ինձ ապշութիւն
Պատճառում էք դուք, հաւասար իմ ունեցած դըրութեան,
Երբ խորհում եմ, որ այնպիսի երևոյթին վրայ նայեցաք
Եւ դեռ ունիք այտերիդ վրայ բընական բոսոր գոյնը,
Մինչդեռ իմոնքս դըժգունացան ահից [1]։

ՌՈՍՍ

Տէր, ի՞նչ երևոյթ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Խընդրում եմ, մի խօսէք. նա աւելի կըվատանայ.
Նա զայրանում է հարցմունքից։ Մի անգամից գիշեր բարի.
Մի՛ սպասէք նախապէս ձեր հրաժեշտի հրամանին,
Ո՛չ, գընացէք միասին։

ԼԷՆՈԿՍ

Բարի գիշեր, և լաւագոյն
Առողջութիւն իւր մեծութեան։

Լ. ՄԱԿԲԵԹ

Գիշեր բարի ամենքիդ։
(Հյուրերն ու շքախումբը գնում են)։

ՄԱԿԲԵԹ

Արիւն է պէտք։ Ասում են՝ արիւնն արիւն է պահանջում։
Յաճախ շարժուել են քարերը, լեզու ելել են ծառերն,
Վըհկութիւնն, հըմայութիւնն կարողացել են յայտնել

---

1) Յայտնի չէ, թէ Մակբեթ ո՞ւմ է ուղղում այս խօսքերն, իւր կընո՞ջ, թէ ընդհանրապէս բոլոր ներկայ եղողներին։

Կաչ՚ղակների, անծեղների ու՚ագռաւների օգնութեամբ
Ամենագաղտ սպանութիւնն։—Գիշերի ո՞ր ժամն է այժմ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Արշալոյսի հետ խաւարը կռուում է. մութն ու լոյս է։

ՄԱԿԲԵԹ

Ի՞նչ կասես սորան. Մակդուֆ չէ կամենում այստեղ գալ
Մեր բարձրագոյն հրաւէրին։

Լ. ՄԱԿԲԵԹ

Դուք նորան հրաւիրեցի՞ք։

ՄԱԿԲԵԹ

Ես կողմնակի այս լըսեցի. բայց իսկոյն կուղարկեմ։—
Չըկայ այստեղ ոչ մի մարդ, որի տանը չունենամ
Ինձ ծառայող մի վարձկան։ Ես կըգընամ այս առաւօտ—
Եւ ուզում եմ կանուխ գնալ—այն կախարդ քոյրերին մօտ։
Պէտք է նըրանք ինձ աւելին ասեն. պէտք է ես արդ գիտնամ
Ամենավատ միջոցովն իսկ ամենավատն։ Ինչ լաւ կարծեմ
Ես ամեն բան նորա համար կըզոհեմ։ Արիւնի մէջ
Ես այնչափ խորն եմ մըտել, որ եթէ այժըմ կանգ առնեմ
Վերադարձն էլ առաջ գընալուն չափ ինձ ծանըր կըլինի։
Տարօրինակ մըտքեր ունիմ գըլխումս, որ ձեռքս են վազում [1]).
Առաջ քան թէ լաւ հասկանամ՝ պէտք է առնեն կատարում։

Լ. ՄԱԿԲԵԹ

Բոլոր կեանքի սփոփիչը, քունն է միայն ձեզ պակաս։

ՄԱԿԲԵԹ

Ե՛կ ուրեմն, ըսփոփիչ քուն։—Իմ արտառոց այն թուլութիւնն
Երկիւղ էր նոր ըսկսողի, որ դեռ չունի վարժութիւն։
Այս գործերում մենք դեռ նոր ենք ու տըհաս։

---

1) Մտքեր, որ ուզում են իսկոյն գործադրուած լինել։ Հ. Թ.

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Ծմակ։ Որոտում։—ԵՐԵՔ ՎՀՈՒԿՆԵՐԸ և ՀԷԿԱՏԷ [1]) հանդիպում են միմեանց։

Ա. ՎՀՈՒԿ

Ի՞նչ կայ, Հէկատէ, դու բարկացած ես նայում։

ՀԷԿԱՏԷ

Եւ իրաւունք չունե՞մ, ջօջի պառաւներ, երբ համարձակ
Եւ ժպիրհ էք դուք այդքան։ Ի՞նչպէս դուք յանդգնեցաք
Մակբեթի հետ կապակցութիւն անելու,
Դաւադրութիւն, սպանութիւններ նիւթելու,
Եւ ես, բոլոր ձեր հմանքերին տիրուհի
Եւ գաղտնապէս հնարողն ամէն չարիքի՝
Ինչո՞ւ ես էլ չըկոչուեցայ մասնակցել,
Մեր արուեստի փառքն, յաղթանակն աւելցնել։
Եւ որ վատն է՝ ինչ որ արդէն դուք արիք՝
Մի ուխտադրուժ մարդի համար յանձն առիք,
Որ ինքնասէր է և մաղձոտ և ինչպէս
Շատերը՝ իւր շահին ծառայ, և ոչ ձեզ։
Այժմ ուղղեցէք ձեր գործն. ասկից հեռացէք
Ի՛ Ախերոնի անդունդին մէջ ինձ գըտէք
Վաղն առաւօտ։ Նա էլ այնտեղ պիտի գայ,
Որպէս զի իւր ճակատագիրն իմանայ։
Պատրաստեցէք ձեր անօթներն ու հըման,
Ձեր կախարդանքն և վերջապէս ամէն բան։
Ես կըթըռչիմ օդն, ուզում եմ այս գիշեր
Օրհասական ահեղ մի բան կատարել,
Որ կէս-գիշեր չեղած պիտի գըլուխ գայ։
Գոլորշիով ուռած [2]) կաթիլ մի ահա,

---

1) Հէկատէ—Պերսէսի (Տիտանի որդու) և Աստերիայի դուստր, համարւում էր աստուածուհի լուսնկայ գիշերի լոյսին և բոլոր գիշերային ճիւաղական երևոյթներին ու վհկութիւններին։

2) Բնագրում՝ profound—խոր, որ մեկնում են՝ իբրև խոր աղէտալի յատկութիւններ ունեցող։

Որ լուսնեակի եղջիւրից վար է կախուած.
Պէտք է բռնեմ նըրան, գետին դեռ չընկած.
Երբ այն զըտեմ ես արուեստով մոգական՝
Օրհասական ոգիք նրանից դուրս կըգան,
Որ պատրանքով նրան գըլխովին կապշեցնեն,
Կործանումի անդունդին մէջ կըգլորեն։
Ճակատագրից, յոյսից նա վեր կըձըգտի
Եւ չի նայի գժոխքի, մահի և բախտի։
Ինչպէս գիտէք՝ անհոգութիւնը
Մահկանացուի քանդում է տունը։
(*Տեսարանի ետեւ նուագ եւ երգ*
„Եկ այստեղ, եկ այստեղ,
Հէկատէ, եկ այստեղ“ և այլն)։
Լսւռ, կանչում են ինձ. փոքրիկ իմ ոգիս, ա՛յ, չէք տեսնում,
Մառախուղի, ամպի մէջ նըստած ինձ է ըսպասում։ (*Գնում է*)։

*Ա. ՎՀՈՒԿ*

Դէ, գընանք, շուտ անենք. նէ իսկոյն յետ կըդառնայ։
(*Գնում են*)։

---

**ՎԵՑԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ**

**Ֆօրս։ Պալատում մի սենեակ։—ԼԷՆՈԿՍ և մի ԼՈՐԴ ներս են մտնում։**

*ԼԷՆՈԿՍ*

Իմ նախկին խօսքերըս ձեզ մի դըրդում տըւին միայն՝
Որ աւելին մակաբերէք։ Միայն այս եմ ես կարծում,
Որ անսովոր բաներ են սոքա։ Մակբեթ սուգ արաւ
Բարեմիտ Դունկանի վրայ. հարկա՛ւ—արդէն նա մեռած էր։
Դիւցազնասիրտ Բանկոն էլ ուշ ժամանակ ըզըօսնեցաւ.
Նըրան—կարող էք ասել, թէ կամենաք—Ֆլինս ըսպանեց.
Որովհետև Ֆլինս փախաւ։ Պէտք չէ այնքան ուշ ըզըօսնել։
Ո՞վ կարող է չըմըտածել, թէ ո՛րպիսի հրէշային
Գործ էր այն, որ Մալ՚կոլ՚մ և Դոնալ՚բայն կատարեցին.—

Առատաշնորհ նրանց հօրը խողխողե՜լ։ Դատապա՛րտ գործ։
Ի՜նչպէս սա ցաւ պատճառեց Մակբեթին։ Սա չըսպանե՞ց
Իսկոյն, ազնիւ զայրոյթից, այն մեղապարտ ամոլներին,
Արբեցութեան գերիներին և քընի ծառաներին։
Ազնիւ գործ չէ՞ր այս անելն. այո՛, նոյնպէս խելացի.
Որովհետև մարդկային ամեն սիրտ էլ կըննեղանար՝
Երբ անպատկառ ուրանային նոքա։ Ուստի ասում եմ,
Նա ամեն բա՛ն կարգին արաւ։ Եւ կարծում եմ, եթէ նա
Դունկանի որդիներին փականքի տակ ունենար,—
Որ լինելու չէ երբէք, փառք Աստուծոյ,—կիմանային
Նոքա, թէ ինչ ասել է հօրն ըսպանել։ Այսպէս էլ Ֆլինս։
Սակայն լո՜ւռ։ Մասամբ ազատ խօսքի համար, և մասամբ
Որ չեկաւ բըռնաւորի խընջոյքին՝ ես լըսեցի,
Մակդուֆ նորա բարկութեանն ենթարկուեցաւ։ Տէր, կարո՞ղ էք
Ինձ ասել, թէ ո՛րտեղ է նա այժմ։

ԼՈՐԴ

Որդին Դունկանի,
Որին զըրկեց բըռնաւորն ժառանգական իրաւունքից՝
Ապրում է անգլիական արքունիքում և վայելում
Բարեպաշտ Եդուարդից այնպիսի սէր ու շընորհք՝
Որ բախտի չարկամութիւնն անկարող եղաւ նորա
Բարձըր պատիւը նուազեցնել։ Այնտեղ գընաց և Մակդուֆ,
Աղաչելու սըրբասուն թագաւորին, որ յուղարկէ
Քաջ Սիվարդն ու Նորթումբերլ՚անդը նորա պաշտպանութեան,
Որպէս զի մենք օգնութեամբ նոցա — նոյնպէս Բարձրեալին,
Որ նուիրական լինի գործն,—վերըստին կարողանանք
Մեր սեղանին կերակուր, գիշերներին քուն պարգևել,
Ազատել մեր ճաշն ու խընջոյք արիւնոտ դաշոյններից,
Հաւատարիմ ծառայել, ազատ յարգանք ընդունել,
Որոնք բոլորն այժըմ մեզ պակասում են։ Եւ այս լուրն
Այն աստիճան բարկացրեց թագաւորին, որ նա արդէն
Պատերազմի է պատրաստւում։

ԼԷՆՈԿՍ

Նա Մակդուֆին հրաւիրե՞ց։

ԼՈՐԴ

Այո՛, տէրս. բայց մի լոկ „Ես ո՛չ, պարոն“ ըստանալով՝
Մռայլադէմ սուրհանդակն յետ դարձաւ մռմռալով,
Կարծես ասել կամենար. «Դուք կափսոսաք այս ժամանակն,
Որ այսպիսի պատասխանով ինձ ճամբեցիք»։

ԼԷՆՈԿՍ

Պէտք է սա
Ըզգուշութիւն ազդէ նորան, որ ինքնիրան հեռու պահէ՝
Որչափ իւր խոհեմութիւնը թելադրէ։ Սուրբ Քերովբէն
Թող սլանայ անգլիական արքունիքն և հաղորդէ
Նորա երթը, դեռ նա այնտեղ չըհասած։ Թող արագ
Դառնայ կըրկին օրհնութիւնն այս վըշտակիր աշխարհին վրայ,
Որ հեծում է բռնութեան տակ։

ԼՈՐԴ

Իմ աղօթքներս նորա հետ։
(Գնում են)։

---

# ՉՈՐՐՈՐԴ ԱՐԱՐՈՒԱԾ



## ԱՌԱՋԻՆ ՏԵՍԱՐԱՆ

Մթին քարանձաւ։ Մէջտեղում մի կաթսայ եռ է գալիս։— Որոտում և կայծակ։ ԵՐԵՔ ՎՀՈՒԿՆԵՐԸ ներս են մտնում։

Ա. ՎՀՈՒԿ

Երեք անգամ խատուտ կատուն մըլաւեց։

Բ. ՎՀՈՒԿ

Երեք անգամ էլ ոզնին ճիչ արձակեց։

Գ. ՎՀՈՒԿ

Բուն ճըչում է. ժամանակ է, ժամանակ է։

Ա. ՎՀՈՒԿ

Կաթսային շուրջ բոլորուեցէք,
Թունաւորուած ընդերք լցրէք.
Դու, գօգօշ, որ երսուն և մի
Գիշեր-ցերեկ տակ պաղ քարի
Պառկած գոլ թոյն էիր նիւթում՝
Նախ դուն եփուիր կախարդ պոյտում։

ԱՄԵՆՔԸ

Կրկին, կրկին, եռա՛, փրփրէ՛ր,
Կըրակ, այրէ՛ր, կաթսայ, եփէ՛ր։

Բ. ՎՀՈՒԿ

Թող թեւ-լեզուն ճահճի օձին
Եռ գայ, եփի մէջ կաթսային։
Մողէսի աչք, մազը մըկան,
Գորտի տոտիկն և լեզուն շան,
Կոյր ճըճուին փուշ, խայթոցն իժի,
Խլուրդի սըրունք, թեւ բուէճի—
Հմայքի համար եռ գան ուժգին,
Իբրև դժոխքի ապուր եփին։

ԱՄԵՆՔԸ

Կըրկին, կըրկին, եռա՛, փրփրէ՛ր,
Կըրակ, այրէ՛ր, կաթսայ, եփէ՛ր։

Գ. ՎՀՈՒԿ

Վիշապի թեփ, գայլի ատամ,
Վըհկի կըմախքն անդամ-անդամ,
Անյագ որկորն ծովի կէտի,
Հետն էլ արմատ մոլեխինդի,
Ամբարըշտող հրէի թոքերն,
Այծի լեղին, մայրի ճիւղերն,
Խաւարումին քաղուած լուսնի,
Թաթարի պռօշ, քիթը թուրքի,
Մատն անդրանիկ երեխայից,
Խեղդուած, թաղուած իւր բոզ մօրից.

Ձրգէք վագրի էլ փորոտի,
Ապուրն արէք թանձր, խուղալի։

ԱՄԵՆՔԸ

Կըրկի՛ն, կըրկի՛ն, եռա՛, փըրփըրի՛ր,
Կըրակ, այրի՛ր, կաթսայ, եփի՛ր։

Բ. ՎՀՈՒԿ

Պաղեցրէք այս՝ ծըծկեր տղայի արիւնով,
Որ հըման լաւ լինի, ամուր, ապահով։
(ՀԸԿԱՑԷՆ եւ ուրիշ ԵՐԵՔ ՎՀՈՒԿՆԵՐ
ներս են մտնում):

ՀԸԿԱՑԸ

Ո՜, լաւ է գործն. հաւանում եմ ձեր ջանքին,
Եւ կըստանաք իւրաքանչիւրդ իւր բաժին։
Արդ կաթսայի շուրջ-բոլորը պարեցէք,
Ինչպէս պայեր, յաւերժահարսք երգեցէք.
Ինչ որ այդտեղ լըցրէք՝ բոլորն հմայեցէք։
(Նուագ եւ երգ. „Սեւ ու կարմիր ոգիներ,
Գորշ ու ճերմակ ոգիներ,
Դէ՛, խառնեցէք, դէ՛, խառնեցէք,
Որչափ կարող էք խառնեցէք“. 1)

Բ. ՎՀՈՒԿ

Քոր եկաւ մատս. է սա նըշան,
Թէ մօտենում է մի չար բան։
Թող ով էլ գայ՝ դուռը բանայ։
(ՄԱԿԲԵԹ ներս է մտնում):

ՄԱԿԲԵԹ

Ի՞նչ դուք, սեւ, գաղտնագործ, կէս գիշերի վըհուկներ,
Ի՞նչ էք անում դուք այդտեղ։

---

1) Երգի այս բառերը Շէկսպիր առել է Միդդլ'տոնի «Վհուկ» թատերգութիւնից, որ հրատարակուեց 1778 թուին։ Երգն երգում են այնտեղ վհուկները, կաթսայի շուրջը պարելով, ինչպէս և „Մակբեթի“ մէջ։

ԱՄԵՆՔԸ

Մի գործ, որ անուն չունի։

ՄԱԿԲԵԹ

Երդմնեցնում եմ ձեզ ես ձեր խաւարային արուեստով—
Ի՛նչ կերպով էլ սովորած լինիք—տուէք ինձ պատասխան։
Թող մրրրիկներն շղթայազերծ անէք դուք և արձակէք
Տաճարների դէմ կռուելու. Թող փրփրալից ալիքներն
Շրփոթեն և կլլանեն ծովագընաց նաւերը,
Թող ծռուի հասուն հասկը, արմատախիլ լինի անտառն,
Թող փուլ գան ամրոցներն պահապանների գլխին,
Թող պալատներն ու բուրգերն խորասուզեն իրանց գագաթն
Մինչև իրանց հիմքերը. Թող բնութեան սերմերի
Գանձարանը խարխափի և խառնակուի, մինչև որ
Խորտակումն իսկ պարտասի—պատասխան տուէք ինձ՝
Ինչ որ հարցնեմ ձեզ։

Ա. ՎՀՈՒԿ

Խօսիր։

Բ. ՎՀՈՒԿ

Հարցրու։

Գ. ՎՀՈՒԿ

Կըտանք պատասխան։

Ա. ՎՀՈՒԿ

Ասա, դու մեր բերանից լսել ուզում ես, թէ մեր
Աւագներից։

ՄԱԿԲԵԹ

Կանչեցէք նոցա, թող ես նոցա տեսնեմ։

Ա. ՎՀՈՒԿ

Խոզի արիւնն, որ ինն խոճկոր
Կերաւ՝ լցրէք, և ճարպը, որ
Իջաւ սպանչի կախաղանից։

ԱՄԵՆՔԸ

Եկ դու բարձրից կամ ցածից,

Արուեստդ ու քեզ փառքով լից։

*(Որոտում: Առաջին երևոյթ. զրահաւորուած մի ԳԼՈԻԽ վեր է բարձրանում):*

ՄԱԿԲԵԹ

Ասա ինձ, դու անծանօթ զօրութիւն...

Ա. ՎՀՈՒԿ

Նա քո միտքըդ գիտէ. լըսիր
Նորա խօսքերն, դու մի՛ խօսիր։

ՆԵՐՆԻՈՑԹ

Մակբե՛թ, Մակբեթ, Մակբեթ, ըզգուշացիր Մակդուֆից,
Ըզգուշացիր Ֆայվի թէնից։ Թողէք ինձ. բաւական է։

*(Խորասուզւում է):*

ՄԱԿԲԵԹ

Ո՛վ էլ լինիս՝ շնորհակալ եմ ուղիղ նախազգուշութեանդ.
Շօշափեցիր դու երկիւղիս վէրքը։ Բայց դեռ մի խօսք էլ։

Ա. ՎՀՈՒԿ

Չէ կարելի հրամայել նորան. ահա մի ուրիշն,
Որ աւելի զօրաւոր է։

*Որոտում: Երկրորդ երևոյթ: Արիւնալից մի ՏՂԱՅ վեր է բարձրանում:*

ՆԵՐՆԻՈՑԹ

Մակբե՛թ, Մակբեթ, Մակբեթ...

ՄԱԿԲԵԹ

Ունենայի՜ երեք ականջ, հաւատացի՛ք քեզ լըսէի։

ՆԵՐՆԻՈՑԹ

Արիւնարբու եղիր, վստահ, վըճռական. արհամարհիր
Մարդկային զօրութիւնը, վասըն զի ոչ ոք երբէք,
Որ կընոջից ծընուած է՝ Մակբեթին չի վընասէ։ *(Խորասուզ-*
*ւում է):*

ՄԱԿԲԵԹ

Ուրեմն ապրիր դու, Մակդուֆ, արժէ վախենալ քեզանից։

Բայց կըրկնակի ապահով կանեմ ապահովութիւնս
Եւ բախտի մի գրաւական կընդունեմ.—դու չես ապրի,
Որ ասեմ տըժգունասիրտ երկիւղին, թէ սըտում է,
Եւ քընիմ՝ չընայելով որոտումին։

*(Որոտում: Երրորդ երեւոյթ: Թագապսակ մի ՄԱՆՈՒԿ, ձեռքում մի ծառ բռնած, վեր է բարձրանում):*

Ի՞նչ է այս,
Որ բարձրանում է իբրեւ արքայական շառաւիղ,
Եւ մանկական նորա ճակատն ահա կըրում է պըսակ,
Իշխանական նաեւ խոյր։

ԱՄԵՆՔԸ

Լըսիր դու, բայց մի խօսիր։

ԵՐԵՒՈՅԹ

Եղիր դու առիւծասիրտ, գոռոզ, եւ հոգ մի՛ անէր՝
Ո՛վ է յուզւում, ո՛վ կատաղում, կամ ո՛վ կազմում է դաւեր։
Վասըն զի երբէք Մակբեթ չէ յաղթըւի մինչ այն վայրկեան,
Որ Բերնամի մեծ անտառը դէպի բարձըր Դունսինան
Զըշարժուի, իւր դէմ չըգայ։ *(Խորասուզւում է):*

ՄԱԿԲԵԹ

Այդ երբէք լինելու չէ։
Ո՞վ կարող է բըռնադատել անտառն. ծառին ո՞վ կըստիպէ
Երկրաբուն իւր արմատից հանուել։ Գուշակ քաղցր եւ բարի։
Ապըստամբ գըլուխ, երբէք մի՛ բարձրանար, մինչ Բէրնամի
Անտառը չըբարձրանայ։ Բարձրագահ մեր Մակբեթը
Կապրի մինչեւ բընութեան նըշանակած վերջին կէտը
Եւ կաւանդէ շունչն որոշեալ ժամանակին։ Սիրտըս սակայն
Բաբախում է գիտնալ մի բան. ասացէք ինձ, եթէ այն
Կարող է ձեր արուեստը. Բանկոյի սերունդն երբէք
Պիտի իշխէ՞ այս տէրութեան մէջ։

ԱՄԵՆՔԸ

Մի՛ ցանկար աւել գիտնալ։

*ՄԱԿԲԵԹ*

Ո՛չ, ես ուզում եմ գոհանալ։ Եթէ ինձ այս բացասէք՝
Յաւիտեան դուք անիծուած լինիք։ Ասէք, իմանամ։

*(Կաթսան խորասուզւում է. փողի ձայնը)։*

Ի՞նչու կաթսան խորասուզւում է, և ինչ ձայներ են այս։

*Ա. ՎՀՈՒԿ*

Դուրս եկէք։

*Բ. ՎՀՈՒԿ*

Դուրս եկէք։

*Գ. ՎՀՈՒԿ*

Դուրս եկէք։

*ԱՄԵՆՔԸ*

Դուրս եկէք, նորա սիրտը տխրեցրէք։
Ստուերի պէս եկէք և անհետացէք։

*(Հետզհետէ երևում են և բեմի վերայից անցնում են ՈՒԹ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ. վերջինը ձեռքումը ունի մի հայելի։ Նոցա հետևում է ԲԱՆԿՈՅԻ ՈԳԻՆ)։*

*ՄԱԿԲԵԹ*

Դու շատ նման ես Բանկոյի ոգուն. գնա՛, հեռացիր.
Քո թագը բորբոքում է իմ աչքերս։—Իսկ քո մազերն,
Դու, երկրորդ ոսկէպսակ գլուխ, նման է առաջնին։—
Մի երրո՛րդ, առաջիններին նման։ Կեղտոտ ջոջեր,
Դուք ինձ ա՞յս էք ցոյց տալիս։—Չորրո՞րդը։ Չորցէք, աչքե՛ր։—
Ի՞նչ, ծաղը մինչև վերջին դատաստանը պիտի հասնէ։—
Մի ուրի՛շն էլ։—Եօթներո՞րդը։ Էլ չեմ ուզում ես նայել։—
Բայց ահա ութերորդը երևում է հայելիով,
Որ դեռ շատերն է ցոյց տալիս ինձ։ Տեսայ մի քանիսներն
Կրկնակի պետագնդով և եռակի գաւազանով։
Սոսկալի՜ տեսարան։—Այժմ ես տեսնում եմ պարզապէս—
Արիւնթաթաւ Բանկոն ահա ծիծաղում է իմ վերաս
Եւ նոցա վրայ ցոյց է տալիս, թէ իւրն են։—*(Վհուկներին)*

Ո՞նչ, այսպէս չէ։

Ա. ՎՀՈՒԿ

Այո՛, տէր, այդպէս է։ Ի՞նչ հղաւ,
Որ Մակբեթ լուռ ապուշ կանգնեցաւ։—
Զուարճացնենք մենք նըրան, ո՛վ քոյրեր,
Եւ ցոյց տանք մեր ընտիր հանդէսներ։
Հըմայով հընչել տամ ես օդին,
Եւ կազմենք մեր բոլոր-պարը հին։
Թող այս մեծ թագաւորն իմանայ,
Որ այստեղ մեծ պատիւ գըտաւ նա։
(Նուագ։ Վհուկները պարում են եւ անհետանում)։

ՄԱԿԲԵԹ

Ո՞ւր են նըրանք. գընացին։—Արհաւրալից թող այս ժամն
Օրացոյցի մէջ յաւիտեան անիծուած նըշանակուի։—
Ներս մըտէք, ո՛վ էք այդտեղ։

(ԼԷՆՕՔՍ ներս է մտնում։)

ԼԷՆՕՔՍ

Ձեր մեծութիւնն ի՞նչ է հաճում։

ՄԱԿԲԵԹ

Նըկատեցիք դուք այն կախարդ քոյրերին։

ԼԷՆՕՔՍ

Ո՛չ, տէր իմ։

ՄԱԿԲԵԹ

Ձեր մօտով չանցա՞ն նըրանք։

ԼԷՆՕՔՍ

Ո՛չ, կըրաւի ոչ, տէր իմ։

ՄԱԿԲԵԹ

Թող ժանտաՀար լինի օդն, որի միջով սըլանում են,
Եւ անիծուի նըրանց հաւատ ընծայողն։—Ես լըսեցի
Ձիերի ոտնադըրոփ։ Ո՞վքեր էին եկողներն։

ԼԷՆՕՔՍ

Երկու-երեք հոգի, տէր, որ լուր բերին, թէ Մակդուֆ

Անգլիա փախաւ։

*ՄԱԿԲԵԹ*

Փախաւ Անգլիա՛։

*ԼԵՆՈՔՍ*

Այո, տէր իմ։

*ՄԱԿԲԵԹ*

Ժամանակ, զուր ես հանում իմ սոսկալի նըպատակներս։
Արագախոյս դիտումներիս երբէք հասնել չէ կարելի՝
Եթէ գործն էլ զուգընթաց հետը չըգնայ։ Այսուհետեւ
Սըրտիս ծընունդն անդրանիկ՝ պէտք է լինի միանգամայն
Եւ ձեռներիս անդրանիկն 1)։ Այժըմ որպէս զի պըսակեմ
Խորհածներըս գործերով—թող խորհուածը գործուած լինի։
Անմիջապէս կըյարձակիմ Մակդուֆի ամրոցին վրայ,
Կըտիրանամ ես Ֆայվին, սըր բերանին կըմատնեմ
Նորա կընոջ, որդիներին եւ բոլոր թըշուառական
Նորա զարմն։—Բայց տարադէպ չըպարծենամ խենթի պէս.
Կըկատարեմ ես այս գործը, դեռ խորհուրդըս չըպաղած։
Էլ պէտք չեն երեւոյթներ։—Ո՞րտեղ են այն պարոններն.
Գընանք, տարէք ինձ նոցա մօտ։ (*Գնում՛ են*)։

---

## ԵՐԿՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Ֆայվ։ Մակդուֆի ամրոցում մի սենեակ։—ԼԷԴԻ ՄԱԿԴՈՒՖ, նէրա ՈՐԴԻՆ և ՌՕՍՍ նէրս են մտնում։

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Ի՞նչ գործի համար նա ստիպուեցաւ երկրից փախչել։

*ՌՕՍՍ*

Համբերութիւն ունեցէք, տիկին։

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Բայց նա չունեցաւ։

---

1) Այսինքն՝ ինչ որ մտքումս ծագեց՝ իսկոյն գործադրեմ։ Հ. Թ.

Ցիմարութիւն էր փախչելն։ Եթէ ոչ մեր գործերը՝
Մեր երկիւղը մեզ դաւաճան է շինում։

ՌՕՍՍ

Դուք չըգիտէք,
Արդեօք այս խոհեմութիւն էր իւր կողմից, թէ երկիւղ։

Լ. ՄԱԿԴՈՒՓ

Խոհեմութի՛ւն. իւր կինը՛ թողնել, թողնել որդիներն,
Իւր տունը, իւր տիտղոսներն, և այնպիսի մի տեղում
Ուսկից նա խոյս է տալիս ինքնին։ Նա մեզ չէ սիրում,
Պակասում է նրան բնական զգացմունք։ Խեղճ ցախսարեկն,
Ամենափոքր թռչնակն անգամ, համարձակւում է կռուել
Բուէճին դէմ, որ իւր ձագերը պաշտպանէ բոյնին մէջ։—
Լոկ երկիւղն է նորա դըրդողն, սէր չըկայ ամենևին.
Փուճ է այն խոհեմութիւնն, ուր փախուստը դատողութեան
Հակառակ է բոլորովին։

ՌՕՍՍ

Իմ սիրելի մօրաքոյր,
Խընդրում եմ, ձեզ զըսպեցէք. որովհետև ձեր ամուսինն
Ազնիւ է, խոհեմ, խելօք և շատ լաւ է ճանաչում
Այս քըմահաճ ժամանակն։ Աւելի ես չեմ համարձակւում
Աւելին. բայց խըստըմբեր ժամանակ է, երբ դառնում ենք
Դաւաճան, առանց մեր իսկ գիտենալուն. երբ երկիւղից
Լըսում ենք շըշունչներին, և չըգիտենք ինչ երկիւղից.
Երբ ծըփւում ենք ալէկոծ և կատաղի ծովին վերայ,
Աստանդ տատանելով։—Ես ձեզանից կըհեռանամ,
Բայց երկար չի տևէ՝ նորից այստեղ կըդառնամ։
Ամենավատ գործերը կամ իսկոյն կըվերջանան,
Կամ մագըլցի կըհասնին նախկին դրութեան։—Տէր ընդ քեզ,
Իմ սիրելի քեռորդեակ։

Լ. ՄԱԿԴՈՒՓ

Նա հայր ունի, բայց անհայր է։

ՌՕՍՍ

Ցիմարութիւն է արածս. եթէ երկար մնամ այստեղ՝

Ինձ բարկութեան կենթարկեմ, ձեզ փորձանքի մէջ կըձգեմ։
Գնամ ուրեմն. ցըտեսութիւն։ (*Գնում է*):

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Սիրուն որդիս, հայրըդ մեռաւ։
Ի՞նչ պէտք է դու այժմ անես. ի՞նչպէս ուզում ես ապրել։

*ՈՐԴԻՆ*

Թըռչուններին պէս, մայրիկ։

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Ի՞նչ, ճանճերո՞վ, ճըճիներո՞վ։

*ՈՐԴԻՆ*

Նորանով՝ ինչ որ գըտնեմ։ Այսպէս անում են և նոքա։

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Խե՜ղճ թըռչնակ, չես վախենում ո՛չ ծուղակից, ոչ ցանցից,
Որոգայթից կամ վարմից։

*ՈՐԴԻՆ*

Ինչո՞ւ, մայրիկ, վախենամ. նոքա խեղճ թըռչունների
Համար չեն։—Մեռած չէ իմ հայրըս, ինչ էլ որ ասէք։

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Այո՛, նա մեռած է։ Դու ո՞րտեղից հայր կըգըտնես։

*ՈՐԴԻՆ*

Իսկ դուք, մայրիկ, ո՞րտեղից ձեզ ամուսին կըգըտնէք։

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Է՜հ, ամեն մի շուկայում ես քըսանը կըգընեմ։

*ՈՐԴԻՆ*

Ուրեմըն դուք գընում էք, որ վերըստին վաճառէք։

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Դու խօսում ես բոլոր քո սրամըտութեամբ, և իրաւ,
Քո հասակիդ նայելով՝ բաւական սըրամիտ է։

*ՈՐԴԻՆ*

Իմ հայրս դաւաճա՞ն էր, մայրիկ։

Լ. ՄԱԿԴՈՒՖ

Այո՛, դաւաճան էր։

ՈՐԴԻՆ

Ի՞նչ է դաւաճանը։

Լ. ՄԱԿԴՈՒՖ

Նա, որ երդւում է, և ստում է։

ՈՐԴԻՆ

Եւ ամէնքը, որ այդ անում են, դաւաճան են։

Լ. ՄԱԿԴՈՒՖ

Ո՛վ որ այս անէ՝ դաւաճան է, և պէտք է որ կախուի։

ՈՐԴԻՆ

Ուրեմն ամէնքն էլ պիտի կախուեն, որ երդւում են և ստում։

Լ. ՄԱԿԴՈՒՖ

Ամենքը։

ՈՐԴԻՆ

Եւ ո՞վ է նոցա կախում։

Լ. ՄԱԿԴՈՒՖ

Ո՛վ,—ազնիւ մարդերը։

ՈՐԴԻՆ

Ուրեմն երդւող ու ստողները կատարեալ յիմարներ են. որովհետև երդւող ու ստողներ այնչափ կան, որ կարող են ազնիւ մարդերին յաղթել ու հէնց նոցա կախել։

Լ. ՄԱԿԴՈՒՖ

Է՛հ, Աստուած խնայէ քեզ, խեղճ անասուն։—Բայց դու ո՞րտեղից քեզ հայր պիտի ճարես։

ՈՐԴԻՆ

Եթէ նա մեռած լինէր՝ դուք նորա վերայ կլայիք. և որովհետև դուք չէք լալիս՝ սա նշան է, որ ես շուտով մի նոր հայր կունենամ։

Լ. ՄԱԿԴՈՒՖ

Խե՛ղճ շաղակրատ. ի՜նչ ես դուրս տալիս։

*(Մի ՍՈՒՐՀԱՆԴԱԿ ներս է մտնում)*

*ՍՈՒՐՀԱՆԴԱԿ*

Աստուած օրհնէ ձեզ, ազնիւ տիկին։ Դուք ինձ չէք ճանաչում.
Սակայն ես լաւ եմ ծանօթ ձեր պատուի աստիճանին։
Կասկածում եմ, որ մօտալուտ ձեզ մի վըտանգ է ըսպառնում։
Եթէ ուզում էք լըսել մի հասարակ մարդու խորհուրդն՝
Մի՛ մընաք այստեղ—խսկոյն որդիներովդ հեռացէք։
Ձեզ այսպէս սարսափեցնելն, ինքս էլ գիտեմ, շատ խիստ է.
Բայց վատագոյնն անել ձեզ՝ դաժանութիւն է սոսկալի,
Որ սակայն շատ մօտ է ձեր անձին։ Աստուած ձեզ պահէ։
Չեմ կարող երկար մընալ այստեղ։ *(Գնում՝ է)։*

*Լ. ՄԱԿԴՈՒՖ*

Ես ո՛ւր պէտի փախչիմ.
Ես չեմ գործել ոչինչ չարիք։ Բայց ահա միտքս է գալիս,
Որ ես էլ այս աշխարհումն եմ ապրում, ուր չար գործելն
Գովելի բան է յաճախ. բարիք գործելը շատ անգամ
Համարւում է վնասակար յիմարութիւն։ Բայց, աւա՜ղ,
Ինչո՞ւ ես պէտի դիմեմ այս կանացի պաշտպանութեան՝
Թէ չեմ գործել ես չարիք։ *(ԵՐԿՈՒ ՄԱՐԴԱՍՊԱՆ ներս են մտնում՝)։*

Այս ի՞նչ դէմքեր են սոքա։

*Ա. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Ո՞ւր է ձեր մարդն։

*Լ. ՄԱԿԲԵԹ*

Յոյս ունիմ՝ ո՛չ այնպիսի անիծապարտ
Տեղում, որ քեզ նըմաններն կարողանան նըրան գըտնել։

*Բ. ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Դաւաճան է նա։

*ՈՐԴԻՆ*

Սո՛ւտ ես, թաւաքուրդ ապերատ։

*ՄԱՐԴԱՍՊԱՆ*

Ի՞նչ, հաւկիթ, դաւաճանի նոր թըխսած։ *(Մորթում՝ է)։*

*ՈՐԴԻՆ*

Ո՛հ, մայրի՛կ,

Նա բռնեց ինձ, փախի՛ր, փախի՛ր անկից, խնդրում եմ։

*(Մեռնում է։ Լէդի Մակդուֆ փախչում է, գոչելով „սպանութի՛ւն“։ Նէրսն հալածում են մարդասպանները)։*

---

## ԵՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Անգլիայում։ Արքունի պալատում մի սենեակ։—ՄԱԼԿՈԼՄ և ՄԱԿԴՈՒՖ ներս են մտնում։

*ՄԱԼԿՈԼՄ*

Փնտրե՛նք միայնութեան մի ըստուեր և ողբանք
Այնտեղ բոլոր մեր վշտերն։

*ՄԱԿԴՈՒՖ*

Թող մանուանդ ձեռք առնենք
Մահացու սուրն, և ինչպէս արի մարդիկ՝ վերադարձնենք
Մեր կողոպտուած իրաւունքն։ Ամէն առաւօտ
Այրիների նոր ողբեր, որբերի գոչ և նորանոր
Հեծեծանք երկնի հանդէպ, որ նոցանով թնդում է,
Որպէս թէ Սկովտիայի հետ նա ըզգար և հառաչէր
Նոյն ցաւագին վանկերով։

*ՄԱԼԿՈԼՄ*

Ես ինչ բանի կըհաւատամ՝
Կըցաւիմ. ինչ որ գիտեմ՝ կըհաւատամ, և ինչ որ
Ուղղել կարող եմ՝ յարմար դէպքը գալիս՝ այն կուղղեմ։
Ինչ որ դուք ասացիք՝ լինել կարող է թերևս։
Այն բռնաւորն, որի անունն իսկ այրում է մեր լեզուն՝
Երբեմն ազնիւ էր համարւում և նոյն իսկ ձեզ սիրելի։
Նա ձեզ դեռևս ձեռք չէ տըւել։ Երիտասարդ եմ դեռ ես.
Գէթ կարող էք ինձանով մի բան շահել նորանից,

Եւ խելացի գործ է զոհել խեղճ, տկար, անմեղ գառը՝
Զայրացած Աստուծուն հաշտեցնելու նպատակով։

ՄԱԿԴՈՒՖ

Ես դաւաճան չեմ։

ՄԱԼԿՈԼՄ

Սակայն դաւաճան է Մակբեթը։
Առաքինի և ազնիւ բնութիւնն անգամ յանձըն կառնէ
Իր իշխողի պատուէրը։ Բայց խնդրում եմ ներողութիւն.—
Դուք ինչ որ էք՝ այն կըմնաք, իմ կարծիքովըս չէք փոխուի։
Միշտ փայլում են հրեշտակներն, թէև ընկաւ ամենափայլն։
Թէև բոլոր չարիքներն կըրեն բարու կերպարանք՝
Սակայն բարու կերպարանքը նոյն կըմնայ։

ՄԱԿԴՈՒՖ

Յոյսըս կորցրի։

ՄԱԼԿՈԼՄ

Թերևս այնտեղ՝ որտեղ ես իմ տարակոյսներըս գըտայ։—
Ինչո՞ւ համար այնպէս փութով թողիք ձեր կինն և որդիներն—
Այն թանկագին գանձերը, սիրու ամուր կապերը—
Առանց հրաժեշտ իսկ տալու։ Խնդրում եմ չընեղանաք.
Իմ կասկածներըս նըպատակ չունին ձեզ վիրաւորել,
Այլ միայն ինձ պաշտպանել։ Դուք միշտ ազնիւ կըմընաք՝
Ինչ էլ որ ես չըմըտածեմ։

ՄԱԿԴՈՒՖ

Թաթաւուիր, թաթաւուիր
Արիւնի մէջ, խե՜ղճ աշխարհ։ Մեծ բռնութիւն, պաշտպանիր
Արմատ ձըգիր, քեզ չի սանձէ ազնուութիւնն։ Հանդէս հանիր
Անիրաւութիւնդ, որ այժմ օրինաւոր դարձաւ։—Իշխան,
Մնաք բարով. ես ձեր կարծած ապիկարը չեմ լինի՝
Եթէ տան էլ բռնաւորի ճանկումն եղած ամբողջ երկիրն,
Նաև ճոխ արևելքը սորա համար։

ՄԱԼԿՈԼՄ

Մի վըշտանաք.
Ես այս չասի անպայման, կասկածելով ձեզանից։

Ես գիտեմ, որ մեր աշխարհը ճընշուած է լծի տակ,
Ողբում է, արիւն հոսում, իւրաքանչիւր օր նոր վէրք
Աւելցնում է իւր վէրքերին վերայ։ Գիտեմ ես նոյնպէս,
Որ ձեռներ կըբարձրանան պաշտպանելու իմ իրաւունքս,
Եւ այստեղ Անգլիայի բարեսիրտ թագաւորը
Կըտայ ինձ հազարաւոր քաջ զինուորներ։ Բայց եթէ
Յաղթանակով ջախջախեմ էլ բռնաւորի գլուխը,
Կամ այն կըրեմ սըրիս վրայ՝ սակայն իմ խեղճ աշխարհը
Աւելի շատ մոլութիւններ կըգըտնէ, քան թէ առաջ,
Աւելի վիշտ կըկրէ, բազմատեսակ նոր ձեւերով,
Ապագայ գահակալից։

*ՄԱԿԴՈՒՓ*

Եւ ո՞վ է այդ գահակալն։

*ՄԱԼԿՈԼՄ*

Ես ինքնին, կարծում եմ ես։ Շատ լաւ գիտեմ, որ իմ մէջ
Այն աստիճան պատուաստուած են մոլութեան ամենակերպ
Տեսակներն, որ երբ նոքա յայտնի լինին՝ սեւ Մակբեթն իսկ
Ձիւնի նըման մաքուր սպիտակ կերեւի, եւ խեղճ աշխարհն
Նըրան գառն կըհամարէ, երբ նըրան համեմատէ
Իմ անհուն չարութեան հետ։

*ՄԱԿԴՈՒՓ*

Ո՛չ, գարշելի դըժոխքի
Լէգէոններն էլ չունին մի դատապարտ դեւ՝ Մակբեթից
Աւելի անիծապարտ։

*ՄԱԼԿՈԼՄ*

Ես համաձայն եմ, որ նա
Արիւնարբու է, ցանկասէր, կըծծի, խարդախ, խաբեբայ,
Զայրացկոտ, չարահոգի եւ լի բոլոր մեղքերով,
Որ անուանել կարելի է։ Բայց անհուն է, անսահման
Իմ մէջի վաւաշութիւնն. ձեր կըները, ձեր դըստրերն
Ձեր տիկիններն, օրիորդները չեն կարող յագեցնել
Իմ ցանկութեան անդունդը։ Իմ վաւաշոտ փափագը
Կըխորտակէր այն բոլոր խափանառիթ արգելքներին,

11

Որ իմ կամքիս դէմ ելնէին։ Քան այսպիսի մէկը՝ Մակբեթ
Լաւագոյն վեհապետ է։

*ՄԱԿԴՈՒՖ*

Անսահման անժուժկալ բարքն
Ցիրաւի նոյնպէս բնութեան բռնութիւն է, և արդէն
Քանի՜ քանի շքեղ գահեր է կործանել անժամանակ
Եւ տապալել թագաւորներ։ Բայց դուք երկիւղ մի կրէք՝
Վայելել որչափ որ կայ։ Դուք կարող էք յագեցնել
Ձեր ցանկութիւնն լիուլի քանակութեամբ, միանգամայն
Պաղասիրտ երևելով՝ ձեզ քօղարկել աշխարհից։
Մենք բաւական յօժարամիտ տիկիններ ունինք. ձեր մէջ
Չէ բնակում այնպիսի անգղ, որ կլլանէ ամենքին,
Որոնք իրանց ձեր բարձրութեան նուիրելու պատրաստ լինին՝
Երբ իմանան ձեր հաճութիւնն։

*ՄԱԼԿՈԼՄ*

Սորանից զատ աճել է.
Բոլորովին փըճացած բնութեանըս մէջ այնպիսի
Անյագելի ագահութիւն, որ թագաւոր թէ լինէի՝
Իշխաններին կըսպանէի՝ որ տիրանամ նոցա երկրին։
Մէկի տանը կըցանկայի և միւսի գոհարներին։
Եւ ամեն մի նոր կողոպուտ իբր համեմանք կըծառայէր՝
Ընչ՚քաղցութիւնս ևս աւելի գըրգռելու։ Կընիւթէի
Անիրաւ վէճեր՝ բարի ւ՚օրինաւոր մարդերին դէմ,
Կըջընջէի ստացուածքներին համար բոլորն։

*ՄԱԿԴՈՒՖ*

Ագահութիւնն
Աւելի խորն է ձըգել կորըստաբեր իւր արմատներն,
Քան ցանկութիւնն ամառնաբոյս 1)։ Սա այն սուրն է, որով մեր
Թագաւորներն ըսպանուեցան։ Բայց նորից մի՛ վախենաք.
Սկովտիան այնչափ լի է, որ ձեր տենչը կըլիացնէ
Ձեր սեփական ստացուածքովն։ Այս ամենը դեռ տանել
Կարելի է՝ եթէ լինին փոխադարձ լաւ յատկութիւններ։

---

1) Այսինքն՝ որ յատուկ է մարդի երիտասարդական հասակին։

*ՄԱԼԿՈԼՄ*

Բայց ես չունիմ և ոչ մէկն։ Թագաւորի զարդերը—
Արդարութիւն, ճըշմարտութիւն, ժուժկալութիւն, ամրութիւն,
Բարութիւն, տոկունութիւն, համբերութիւն, հեզութիւն,
Սրութիւն, քաջութիւն, գութ և անձնանուիրութիւն—
Սոցա հետքն էլ չունիմ ես։ Բայց սոցա տեղ առատ եմ
Ես բոլոր ոճիրների ամենակերպ տեսակներով,
Որ գործում եմ տարբեր ձևով։ Թէ զօրութիւն ունենայի՝
Հաշտութեան քաղցըր կաթն ես դըժոխքը կըթափէի,
Տիեզերքի հանգիստը կըյուզէի, աշխարհից
Կարտաքսէի խաղաղութիւնն։

*ՄԱԿԴՈՒՖ*

Ո՜հ, Սկովտիա, Սկովտիա։

*ՄԱԼԿՈԼՄ*

Այսպիսի մէկն եթէ արժան է իշխելու՝ ասացէք,
Ես այն եմ՝ ինչ որ ասի։

*ՄԱԿԴՈՒՖ*

Իշխելու արժանի՜.
Ո՛չ, և ոչ իսկ ապրելու։—Ո՜վ ազգ թըշուառական,
Բռնաւորի արիւնոտ գայիսոնով կառավարուած,
Ե՞րբ դու կըրկին կըտեսնես քո բախտաւոր օրերը։
Ահա այստեղ քո գահի բուն հարազատ ժառանգն այսպէս
Կանգնած է, իւր սեփական մեղադրութեամբ դատապարտուած,
Եւ իւր ցեղն է չարախօսում։—Արքայական քո հայրը
Սրբազան թագաւոր էր. թագուհին, որ քեզ ծընաւ՝
Ծընկան վերայ լինում էր յաճախ, քան թէ ոտքի վերայ 1),
Եւ մեռնում էր իւր կեանքի ամեն մի օրն։ Մնաս բարով։
Այն արատներն, որ դու ինքնին բարդեցիր քո վերադ՝
Ինձ նոքա Սկովտիայից արտաքսեցին։—Ո՜վ իմ սիրտ,
Քո յոյսդ այստեղ վերջացաւ։

*ՄԱԼԿՈԼՄ*

Մակդո՛ւֆ, այդ ազնիւ զայրոյթն,

---

1) Այսինքն՝ յաճախ աղօթում էր, ծունկ չոգած։ Հ. Թ.

Պարզսրտութեան որդին, սրբեց և փարատեց իմ հոգուց
Սև կասկածներն և հաշտեցրեց իմ խորհուրդները քո ազնիւ
Հաւատարիմ բնութեանդ հետ։ Դժոխային Մակբեթն յաճախ
Փորձ է արել այդպիսի արուեստներով ինձ որսալ
Եւ ձեռք ձգել. և զգուշաւոր խոհեմութիւնն ինձ ազատեց
Դիւրահաւան ըշտապելից։ Բայց թող բարձրեալ Աստուածը
Քո և իմ մէջ դատաստան կըտրէ։ Ահա ես ինքս ինձ
Այժմէն յանձնում եմ քո ձեռքն և իմ անձի մեղադրանքները,
Որ ես արի՝ յետ եմ առնում։ Ահա երդմամբ հրաժարում եմ.
Այն ոճիրներն ու բծերն, որ ինքնին ինձ վերագրեցի՝
Նոքա օտար են իմ բնութեանս։ Մինչև այսօր ես կընի հետ
Ծանօթութիւն չեմ ունեցել. սուտ չեմ երդուել ես երբէք,
Եւ հազիւ ցանկացել եմ նորան՝ որ ինձ է պատկանում։
Ես չեմ դրժել երբէք խօսքիս, չէի անգամ կամենայ
Դևը մատնել իւր ընկերին։ Ճշմարտութիւնն ինձ պակաս
Չէ սիրելի, որչափ կեանքը. իմ առաջին խօսած սուտս
Հէնց այն էր իմ անձիս դէմ։ Ինչ որ ես եմ իսկապէս՝
Պատկանում եմ քո և իմ աշխարհի իրաւունքին։
Արդէն քո գալուցդ առաջ այնտեղ դիմել պատրաստուած էր
Ծերունին Սիվարդ, տասն հազար ընտիր զինուորներով,
Բոլորովին կազմ և պատրաստ պատերազմի. արդ միասին
Մենք կըգընանք։ Եւ թող Աստուած բարի անէ գործի ելքն,
Ինչպէս արդար է մեր այս դատը։—Ինչո՞ւ լռում էք։

ՄԱԿԴՈՒՖ

Այս տեսակ հաճելի և անհաճոյ գործերն՝ իսկոյն
Դըժուարին է միմեանց հետ կապակցել։

(Մի ԲԺԻՇԿ ներս է մտնում):

ՄԱԼԿՈԼՄ

Լաւ, այս մասին
Դեռ կըխօսինք։ (Բժշկին)։ Թագաւորը դուրս կըգա՞յ, ասէք
խընդրեմ։

ԲԺԻՇԿ

Այո՛, տէր. արդէն մի խումբ թշուառներ ըսպասում են

Նորանից բժշկուելու։ Նորա ախտը ծաղր է անում
Արուեստի մեծ փորձերը։ Բայց երբ նորա հպում է նա—
Երկինք նորա ձեռներին տուել է այս բժշկութիւնն—
Նոքա բուժւում են իսկոյն։

ՄԱԼԿՈԼՄ

Շնորհակալ եմ ձեզ, բժիշկ։
(*Բժիշկը գնում է*)։

ՄԱԿԴՈՒՖ

Ի՞նչ ախտ է այդ, որի մասին խօսում էիք։

ՄԱԼԿՈԼՄ

„Վիշտ“ են ասում։
Այս բարի թագաւորի մեծ հրաշալի մի ձիրքն է,
Որ յաճախ, Անգլիայում իմ եղած օրից ի վեր՝
Ես տեսել եմ նորա մէջ։ Ինքը միայն գիտէ, ինչպէս
Պաղատում է երկնքին. բայց նորատի ախտով բռնուած
Ժողովրդին—լի վէրքերով, պալարներով, նայողի
Գութը շարժող, բժշկութեան անմատչելի՝—նա բուժում է,
Նորա վզից կախելով մի ոսկեղէն նշանադրամ,
Եւ սուրբ աղօթք անելով։ Եւ ասում են՝ նա կթողնէ
Արքայական ժառանգութիւն իւր սերնդին՝ նոյնպէս այս
Բժշկութեան օրհնութիւնն։ Այս հազուագիւտ ձիրքին հետ
Ունի նաև երկնատուր հոգի մարգարէութեան։
Եւ այլ և այլ օրհնութիւններ, որ շուրջ պատում են նորա
գահն՝
Վկայում են, թէ նա շնորհով լի է [1])։
(*ՌՕՍՍ ներս է մտնում*)։

ՄԱԿԴՈՒՖ

Տեսէք, ով է գալիս։

---

1) Այս մենախօսութիւնը հաւանօրէն առնուած է Հոլինշէդի ժամանակագրութիւնից, որ աւանդում է, թէ Եդուարդ Խոստովանողն ունէր մարգարէութեան շնորհ և բժշկում էր շատ հիւանդութիւններ։ Նա բուժում էր այն հիւանդներին, որոնք ախտացած էին «արքայական ախտ» կոչուած մի առանձին հիւանդութեամբ, և այս հրաշալի շնորհը նա աւանդեց իւր ժառանգներին։ Հ. Թ.

ՄԱԼԿՈԼՄ

Մի երկրացի, բայց դեռևս չեմ ճանաչում ես նրան։

ՄԱԿԴՈՒՖ

Իմ թանկագին ազգականս, բարով լինի ձեր գալուստն։

ՄԱԼԿՈԼՄ

Այժըմ նրան ճանաչեցի։—Աստուած, Աստուած, հեռացրու
Այն առիթները, որոնք մեզ օտարացրին։

ՌՈՍՍ

Ամէն. տէր։

ՄԱԿԴՈՒՖ

Սկովտիան ի՞նչպէս է այժմ։

ՌՈՍՍ

Ո՜հ, աշխարհ խղճալի,
Որ ինքնիրան ճանաչելուց սարսափում է. նա չէ կարող
Մեզ մայր կոչուել, այլ գերեզման. ուր ժըպիտ չէ երևում
Ոչ ոքի վրայ, բայց միայն՝ ով դեռ ոչինչ չըգիտէ.
Ուր ողբեր, ճիչ, հառաչանք լըցնում են օդն և լըսւում,
Բայց աննըկատ են մընում. ուր կատաղի վիշտն՝ առօրեայ
Ըզգացմունքի է նըման. ուր մեռելի զանգն հընչելիս՝
Հազիւ հարցնում է մէկը «ում համար է», և բարի
Մարդի կեանքը իւր գըլխարկի տերևից շուտ է թառամում.
Մարդ մեռնում է՝ առաջ քան թէ հիւանդանայ։

ՄԱԿԴՈՒՖ

Ո՜հ պատկեր
Խիստ գոյներով, բայց շատ ճիշտ։

ՄԱԼԿՈԼՄ

Ամենանոր վիշտն ի՞նչ է։

ՌՈՍՍ

Մի ժամ առաջ պատահածը պատմողին ծաղր են անում.—
Իւրաքանչիւր ակընթարթ մի նորագոյնն է ծընում։

ՄԱԿԴՈՒՖ

Ի՞նչպէս է կինս։

ՌՕՍՍ

Ո՛, շատ լաւ։

ՄԱԿԴՈՒՖ

Իսկ որդիներս։

ՌՕՍՍ

Նոյնպէս լաւ։

ՄԱԿԴՈՒՖ

Բռնաւորը չըվրդովե՞ց արդեօք նոցա խաղաղութիւնն։

ՌՕՍՍ

Ո՛չ, նոքա խաղաղ էին, երբ ես նոցա հրաժեշտ տուի։—
(*Մալ՛կոլ՛մին*) Երբ այստեղ էի դիմում ձեզ նոր լուրեր բերելու,
Որ գըժուար էր ինձ բառնալ՝ պըտըտում էր մի շըշուկ,
Թէ մի քանի արիասիրտ ընկերներ զէնք են վերցրել։
Եւ այս մասին իմ հաւատքս աւելի հաստատուեցաւ՝
Երբ տեսայ բռնաւորի զօրքերի պատրաստուելը։
Այժըմ ժամ է օգնութեան։ Սկովտիայում ձեր հայեացքը
Զինուորներ կըստեղծէր, նոյն իսկ կանանց կըռուել կըտար՝
Որ վերջ դըրուէր դառն աղէտին։

ՄԱԼ՛ԿՈԼ՛Մ

Թող նոքա մըխիթարուին.
Մենք դուրս գալու վերայ ենք։ Մեծահոգի Անգլիան
Մեզ տուեց քաջ Սիվարդը և տասնհազար զինուորներ։
Նորանից ծեր և քաջարի պատերազմող չէ գըտընւում
Քրիստոնեայ աշխարհին մէջ։

ՌՕՍՍ

Ո՜ւր էր, ես այդ մխիթարութեան
Նո՛յնպէս տայի պատասխան։ Բայց ես այնպէս խօսքեր ունիմ,
Որ միայն դատարկ օդում հարկաւոր է այն հընչել,
Որ դուք երբէք չըլսէիք։

ՄԱԿԴՈՒՖ

Ո՞ւմ են նոքա վերաբերում,
Ընդհանրութեա՞ն գործերին, թէ՞ վըշտերի մի տուրք է այն՝
Վիճակուած մէկ անհատի սըրտին։

ՌՕՍՍ

Ոչ մի ազնիւ հոգի
Չէ կարող անկարեկից գտրնուել. բայց մեծագոյն
Նորա մասն՝ վերաբերում է ձեզ միայն։

ՄԱԿԴՈՒՖ

Եթէ իմս է՝
Էլ մի՛ պահէք ինձանից, թողէք շուտով այն ըստանամ։

ՌՕՍՍ

Թող լեզուս ձեր ականջից ընդ միշտ ատուած չըլինի,
Եթէ նըրան պատառէ ամենատխուր մի ձայնով,
Որ նա երբէք լըսել է։

ՄԱԿԴՈՒՖ

Հա՛, ես այն գուշակում եմ։

ՌՕՍՍ

Ձեր ամրոցն յարձակումի ենթարկուեց. կին, որդիք
Կոտորուած են վայրենաբար. բայց լիշելը թէ ինչ կերպով՝
Նոյնն է թէ արիւնախանձ ըսպանութեան աւարին
Ձեր մահն ևս միացնէի։

ՄԱԼԿՈԼՄ

Ո՜վ երկինք ամենողորմ։—
Ի՞նչ է, մարդ, մի՛ քաշէք այդպէս գըլխարկն յոնքերիդ.
Ձեր վըշտին բառեր տըւէք։ Այն ցաւը, որ չէ խօսում՝
Կըլեցնէ ծանրաբեռնուած սիրտն և նըրան կըպատառէ։

ՄԱԿԴՈՒՖ

Որդինե՞րս էլ։

ՌՕՍՍ

Կին, որդի, սպասաւորներ, ամեն բան,
Ինչ որ այնտեղ գըտընւում էր։

ՄԱԿԴՈՒՖ

Եւ ես հեռուն լինէի՜։—
Կընո՞ջս էլ ըսպանեցին։

ՌՕՍՍ

Արդէն ասի։

ՄԱԼԿՈԼՄ

Ձեզ բռնեցէք։
Թող մեր մեծ վրէժխնդրութեամբ դեղ պատրաստենք՝ բուժելու
Այս մահացու վշտերը։

ՄԱԿԴՈՒՖ

Նա չունի՜ որդի։—Բոլոր իմ սիրասուն որդինե՜րս.
Բոլո՞րը, ասացիք դուք։ Ո՜ դժոխային անգղ. բոլո՞րն։
Ի՞նչ, բոլոր իմ սիրական ձագե՜րըս, իրանց մօր հե՜տ,
Մի վայրենի հարուածո՞վ։

ՄԱԼԿՈԼՄ

Կըռեցէք այս իբրև այր։

ՄԱԿԴՈՒՖ

Ուզում եմ. բայց պէտք է նոյնպէս զգամ իբրև այր։
Ես չեմ կարող չյիշել, թէ նոքա այն բաներն էին,
Որոնք ինձ սիրելագոյնն էին։ Երկինքն այս տեսաւ,
Եւ պաշտպանել չուզե՜ց նոցա։—Դու, Մակդո՜ւֆ մեղապարտ,
Նոքա բոլորն սպանուեցան քե՛զ համար։ Ես, չքաւո՜ր,
Ոչ թէ իրանց յանցանքին, ո՛չ, միայն իմանցս համար
Հընձեց նոցա սպանութիւնն։—Ողորմէ՜ նոցա Աստուած։

ՄԱԼԿՈԼՄ

Թող ձեր սրտին սա յեսան լինի։ Ոխի փոխեցէք
Ձեր վիշտը. մի՛ ընկճէք ձեր սիրտն, հապա բորբոքեցէք։

ՄԱԿԴՈՒՖ

Ո՜, դիւրաւ կարող էի ես աչքերովս կին դառնալ [1]
Եւ լեզուովս պարծենկոտ։ Սակայն դու, գըթած երկինք,
Կարճացրու որևիցէ յապաղում. Սկովտիայի
Այն դևին և ինձ ինքնին բեր ճակատ-առ-ճակատ.

---

1) Արտասուել։ Հ. Թ.

Մօտեցրու ինձ նըրան սըրի տարածութեամբ.—եթէ խոյս տայ՝
Այն ժամանակ ներիր նորան, երկինք։

*ՄԱԼԿՈԼՄ*

Ահա՜ առնացի խօսք։
Ե՛կ, գընանք Թագաւորին մօտ. պատրաստ է բանակը։
Մեզ չէ մընում ոչինչ, բացի հրաժեշտից։ Մակբեթ արդէն
Հասուն է, որ ցունց տըրուի, և Բարձրեալի զօրութիւնն
Կազմում է իւր գործիքներն։ Առէք ինչ որ ձեզ ըսփոփէ։
Երկար է այն գիշերն, որ չէ երբէք լուսանում։ (*Գնում՝ են*)։

---

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՐԱՐՈՒԱԾ



## ԱՌԱՋԻՆ ՏԵՍԱՐԱՆ

Դունսինան։ Ամրոցում մի սենեակ.—Մի ԲԺԻՇԿ և մի ՊԱԼԱՏԱԿԱՆ ԿԻՆ ներս են մտնում։

*ԲԺԻՇԿ*

Ահա երկու գիշեր է, որ ես ձեզ հետ արթուն եմ մընում, բայց դեռ ձեր ասածն հաստատուած չտեսայ։ Վերջին անգամ ե՞րբ նէ շրջեցաւ։

*ՊԱԼԱՏ. ԿԻՆ*

Սկսեալ այն ժամանակից, որ նորին մեծութիւնը պատերազմի ելաւ՝ ես տեսնում էի, որ նէ անկողնից վեր էր կենում, գիշերազգեստը վերան էր ձգում, բաց էր անում գրասեղանը, առնում էր թուղթ, ծալում էր, գրում էր վերան, կարդում էր, կնքում էր և կրկին անկողին էր գնում։ Եւ բոլոր այս ժամանակը խոր քնի մէջ էր լինում։

*ԲԺԻՇԿ* (*առանձին*)

Կազմուածքի մեծ խանգարում. միաժամանակ թէ քնի բարիքը ճաշակել և թէ արթնութեան գործեր կատարել։—(*Պա-*

*լատական կնին)*։ Այս քնաթաթախ յուզման մէջ, բացի նէրա շրջագայութիւնից և միւս իրական գործողութիւններից, երբեմն երբեմն ի՞նչ լսեցիք նէրան խօսելիս։

*ՊԱԼԱՏ. ԿԻՆ*

Այնպիսի բաներ, տէր, որ ես չեմ ուզում Ձեզ կրկնել։

*ԲԺԻՇԿ*

Ինձ՝ կարող էք ասել, և լաւ կլինէր՝ եթէ ասէիք։

*ՊԱԼԱՏ. ԿԻՆ*

Ոչ Ձեզ և ոչ որևէ մէկին։ Վասն զի ես ապացոյցներ չունիմ իմ խօսքս հաստատելու։

*(ԼԷԴԻ ՄԱԿԲԵԹ, ճրագը ձեռքին, ներս է մտնում)*։

Նայեցէք, ահա ինքը գալիս է։ Այս է նէրա սովորական ձևն, և, կեանքս վկայ, խոր քնի մէջ է։ Նկատեցէք նէրան, աւելի մօտ գնացէք։

*ԲԺԻՇԿ*

Այս ճրագն ի՞նչպէս ձեռք բերեց։

*ՊԱԼԱՏ. ԿԻՆ*

Ի՞նչպէս. նէրա մօտն էր այն. նէ իր մօտ ճիշտ ճրագ ունի. այսպէս է նէ հրամայել։

*ԲԺԻՇԿ*

Տեսէք, նէրա աչքերը բաց են։

*ՊԱԼԱՏ. ԿԻՆ*

Այո՛, բայց նէրա զգայարանքները փակ են։

*ԲԺԻՇԿ*

Ի՞նչ է անում այժմ. նայեցէք ի՞նչպէս նէ ձեռները շըփում է։

*ՊԱԼԱՏ. ԿԻՆ*

Սա նէրա սովորական շարժումն է, և այնպէս է երևում, իբր թէ նէ ձեռները լուանում է։ Ես տեսել եմ, որ քառորդ ժամ շարունակ այսպէս է արել։

Լ. ՄԱԿԲԵԹ

Ահա՛, մի բիծ էլ այստեղ։

ԲԺԻՇԿ

Լո՛ւռ, նէ խօսում է։ Ես գրի կառնեմ՝ ինչ որ խօսի, որպէս զի աւելի լաւ պահեմ մտքումս։

Լ. ՄԱԿԲԵԹ

Հեռո՛ւ, անիծեալ բիծ, հեռո՛ւ, ասում եմ։ Մէկ, երկու… այո՛, ժամանակ է գործ անելու։ Խաւար է դժոխքը։ Թի՜ւ, միլ՛որդ, թի՜ւ. զինուոր, և վախկո՞տ։ Ինչո՞ւ վախենանք թէ այս կիմանան՝ երբ ոչ ոք չի համարձակի մեր զօրութիւնը պատասխանատուութեան ենթարկելու։ Սակայն ո՞վ կըկարծէր, թէ ծերուկն այսչափ արիւն ունենայ իւր մէջ։

ԲԺԻՇԿ

Լաւ նկատո՞ւմ էք։

Լ. ՄԱԿԲԵԹ

Ֆայֆի թէնը մի կին ունէր. ո՞ւր է նա այժմ։—Ի՞նչ, այս ձեռներն էլ երբէք չպիտի՞ մաքրուին։—Բաւական է այս մասին, միլ՛որդ, բաւական է։ Դուք ամեն ինչ փճացնում էք ձեր սարսափով։

ԲԺԻՇԿ

Գնացէ՛ք, գնացէք. դուք իմացաք՝ ինչ որ պէտք չէ իմանայիք։

ՊԱԼԱՏ. ԿԻՆ

Նէ ասաց՝ ինչ որ պէտք չէ ասէր, այս ճիշտ է։ Աստուած գիտէ, թէ նէ ինչեր կարող է գիտենալ։

Լ. ՄԱԿԲԵԹ

Այստեղից դեռ ևս գալիս է արիւնի հոտը։ Արաբիայի բոլոր անուշահոտութիւնները չեն կարող քաղցրացնել այս փոքրիկ ձեռքը։—Օ՜հ, օհ, օհ։

ԲԺԻՇԿ

Ի՜նչպիսի հառաչանք է այս։ Նրա սիրտը ցաւագին ծանրաբեռնուած է։

ՊԱԼԱՏ. ԿԻՆ

Ես չէի կամենայ մի այդպիսի սիրտ կրել կուրծքիս մէջ, ոչ իսկ այդ մարմնի բոլոր պատիւներին համար։

ԲԺԻՇԿ

Լաւ, լաւ, լաւ...

ՊԱԼԱՏ. ԿԻՆ

Աղօթեցէք Աստծու, որ այդպէս լինի, տէր։

ԲԺԻՇԿ

Այս հիւանդութիւնն իմ արուեստից վեր է։ Սակայն ես տեսել եմ մարդիկ, որ քնի մէջ շրջում էին, բայց իրանց անկողնին մէջ սրբութեամբ էին մեռնում։

Լ. ՄԱԿԲԵԹ

Լուա ձեռներդ, գիշերազգեստդ հագիր. այդպէս տըժգոյն մի՛ լինիր։ Մի անգամ էլ քեզ ասում եմ. Բանկոյ վաղուց թաղուած է. նա չէ կարող դամբարանից դուրս գալ։

ԲԺԻՇԿ

Ճի՛շտ այդպէս։

Լ. ՄԱԿԲԵԹ

Անկողին, անկողին։ Լսում եմ, դուռը ծեծում են։ Ե՛կ, եկ, եկ, եկ, ձեռքդ ինձ տուր։ Ինչ որ գործուած է՝ չէ կարող չգործուած դառնալ։ Անկողի՛ն, անկողի՛ն, անկողի՛ն։

(Գնում՛ է):

ԲԺԻՇԿ

Նէ այժմ անկողին է գնում։

ՊԱԼԱՏ. ԿԻՆ

Ուղղակի։

ԲԺԻՇԿ

Սոսկալի շատ տըրտունջներ լըսուեցան։ Անբնական գործն
Անբնական վիշտ է ծագեցնում։ Արատաւոր խըղճերը
Յաճախ իրանց համրը բարձին հաւատում են գաղտնիքներն։
Նէ մանաւանդ քահանայի պէտք ունի, քան բըժըշկի։
Աստուած, ներիր մեզ ամենիս։—Նէրա վերայ հըսկեցէք.

Հեռացրէք նէրանից վնասաբեր առարկաներն
Եւ միշտ վերան աչք ունեցէք։ Առ այժըմ բարի գիշեր։
Նէ իմ միտքըս խառնակեց, սարսափեցրեց իմ աչքերս։
Մըտածում եմ, բայց չեմ կարող խօսել։

*ՊԱՂԱՏ. ԿԻՆ*

Տէր, գիշեր բարի։
*(Գնում են)։*

---

## ԵՐԿՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

*Մի վայր Դունսինանի մօտ։—ՄԷՆՏԷԹ, ԿԷԹՆԷՍ, ԱՆԳՈՒՍ, ԼԷՆՈԿՍ և ԶԻՆՈՒՈՐՆԵՐ թմբուկներով և դրօշակներով ներս են մտնում։*

*ՄԷՆՏԷԹ*

Մօտենում է բրիտանական զօրքը, որի առաջնորդն են
Մալ'կոլ'մ, Սիվարդ իւր հօրեղբայրն և քաջարին մեր Մակդուֆ։
Նոցա մէջ բորբոքւում է վրէժը. նոցա սուրբ իրաւունքն՝
Դէպի այս արիւնալից ահեղ գործը կոգևորէր
Մարմնով մեռած մարդին իսկ [1])։

*ԱՆԳՈՒՍ*

Բէրնամի անտառին մօտ
Կըհանդիպէինք մենք նոցա. նոքա գալիս են այն տեղով։

*ԿԷԹՆԷՍ*

Գիտէք արդեօք, Դոնալ'բայնն ևս այնտեղ է եղբօր հետ։

*ԼԷՆՈԿՍ*

Ո՛չ, նա չըկայ հաւանօրէն. ես բոլոր ազնուականաց
Ունիմ ցանկը. այնտեղ է և Սիվարդի որդին, նոյնպէս
Շատ անմօրուք պատանիներ, որ հէնց այժմ պիտի ցոյց տան
Փորձը իրանց քաջութեան։

*ՄԷՆՏԷԹ*

Ի՞նչ է անում բռնաւորը։

---

1) Այսինքն՝ անզգայականին։

ԿԷԹՆԷՍ

Ամրապէնդ ամրացնում է նա Հըզօր Դունսինան բերդն։
Ոմանք նըրան խենթ են կոչում. իսկ ո՛վ նըրան քիչ է ատում՝
Կոչում է այդ՝ արութեան կատաղութիւն։ Բայց ճիշտն այս է,
Որ չէ կարող նա կոճկել իւր խառնաշփոթ վատ գործը
Ռազմական կարգի գօտով։

ԱՆԳՈՒՍ

Նա ըզգում է այժմ, ինչպէս
Իւր գաղտնի սպանութիւններն իւր ձեռներին են կըպչոտում.
Ժամէ-ժամ խըռըրտմունքներն ամբաստանում են իւր դաւերն։
Ում որ նա հրամայում է՝ կատարում են, հրամանից
Եւ ոչ սիրուց դըրդուած։ Այժմ նա ըզգում է, որ իւր տիտղոսն
Քաշ է գալիս իւր վերայից, ինչպէս հագուստն հըսկայի՝
Մի թըզուկ գողի վերայ։

ՄԷՆՏԷԹ

Ո՞վ կարող է մեղադրել,
Որ նորա խեղճ զգայութիւնն նըրան խռովում, ապշեցնում է՝
Երբ նորա մէջ ամէն բան դատապարտում է ինքնիրան,
Թէ ինչո՛ւ այնտեղ է ինքն։

ԿԷԹՆԷՍ

Օ՜ն, գընանք առաջ, և մեր
Միամիտ հպատակութիւնն յայտնենք այնտեղ, ուր հարկ է.
Այս հիւանդոտ աշխարհի դիմաւորենք բըժըշկին,
Եւ նորա հետ՝ մեր աշխարհը սըրբելու համար թափենք
Մեր արիւնի վերջին կաթիլն։

ԼԷՆՈԿՍ

Կամ այնչափ, որչափ պէտք է՝
Ցօղելու արքայական ծաղիկը, և խեղդելու
Վայրի խոտերն։ Ուրեմըն քայլերս ուղղենք դէպի Բէրնամ։
(Գնում են)։

## ԵՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

*Դունսինան։ Դղյակում մի սենեակ։—ՄԱԿԲԵԹ, ԲԺԻՇԿՆ և ՇՔԱԽՈՒՄԲԸ ներս են մտնում։*

ՄԱԿԲԵԹ

Տեղեկութիւն էլ մի՛ բերէք ինձ. թող փախչին բոլորն էլ.
Մինչ Բիրնամի անտառը Դունսինանի դէմ չըշարժի՝
Ինձ չէ կարող տիրել երկիւղն։ Ի՞նչ է Մալքոլմն, այն տղան,
Միթէ կընոջ ծընած չէ՞ նա։ Այն ոգիներն, որ բոլոր
Մահկանացուաց վիճակը գիտեն՝ այսպէս ինձ ասացին.
«Մակբեթ, մի՛ վախենար. կընոջ ծընածը երբէք
Քո վերայ չի տիրանայ»։—Դաւաճան թէններ, փախէք
Եւ խառնուեցէք եպիկուրեան անգլիացոց շարքերին հետ։
Իմ վեհ հոգիս և իմ սիրտս, որ բաբախում է այրաբար՝
Ոչ երբէք պիտի ընկճին կասկածանքից, դողան ահից։

(*Մի ԾԱՌԱՑ ներս է մտնում*)։

Սատանան քեզ սևացնէ, ա՛յ դու թերմաշ թան-երես.
Ո՞րտեղից դու գընեցիր այդ քո սագի պատկերըդ։

ԾԱՌԱՑ

Գալիս են տասն հազար...

ՄԱԿԲԵԹ

Սա՞գ, ապիրատ։

ԾԱՌԱՑ

Զինուոր, տէ՛ր։

ՄԱԿԲԵԹ

Գընա՛, ճեղքիր գարշ երեսդ, և երկիւղդ՝ կարմիր ներկիր,
Լեզեպատառ դու լակոտ։ Ի՞նչ զինուորներ, խելագար.
Մահը կըպչի քո հոգուդ։ Ճերմակ-քաթան քո այտերըդ
Խորհըրդակից են երկիւղի։ Ի՞նչ զինուորներ, չիճուկ-երես։

ԾԱՌԱՑ

Անգլիական բանակը, ներողութիւն արէք ինձ։

ՄԱԿԲԵԹ

Զըզուեցրո՛ւ քո պատկերըդ։—Սէյտոն։—Զըզուանքըս գալիս է
Երբ տեսնում եմ։—Սէյտոն։—Այս ընդհարումն ինձ ընդ միշտ
Կըբըժըշկէ մի անգամից, կամ իսկոյն կը խորտակէ։
Ես բաւական ապրեցայ. իմ կեանքիս ճանապարհը
Երաշտի և թառամած տերևների միջով անցաւ։
Իսկ ինչ որ ուղեկից պիտի լինի ծերութեան—
Պատիւ, սէր, հնազանդութիւն, բարեկամաց բազմութիւն—
Ես այն պիտի չունենամ. բայց փոխանակ նորա՝ անէծք,
Ոչ բարձրաձայն, բայց խոր սրտից, լեզուով պատիւ—դա-
տարկ ձայն,
Որ ինձ անշուշտ կըզըլանար խեղճ սիրտն՝ եթէ համարձակէր։
Սէյտոն։ *(ՍԷՅՏՈՆ ներս է մտնում):*

ՍԷՅՏՈՆ

Հրամայեցէք, մեծութիւն։

ՄԱԿԲԵԹ

Նորագոյն լո՞ւր։

ՍԷՅՏՈՆ

Ինչ որ ձեզ հաղորդեցին, մի՛լորդ, բոլորն ըստուգուեց։

ՄԱԿԲԵԹ

Ես կըկռուիմ՝ մինչև միսըս ոսկորներիս վրայ կըտրատուի։
Տուր զըրահներս։

ՍԷՅՏՈՆ

Դեռ նոքա պէտք չեն։

ՄԱԿԲԵԹ

Ուզում եմ հագնել—
Շատ հեծեալներ հանեցէք և շըրջեցէք բոլոր երկիրն.
Կախեցէք՝ ով որ ահի մասին խօսի։—Տուր զըրահներս։—
*(ԲԺՇԿԻՆ)* Ի՞նչպէս է ձեր հիւանդը, բըժիշկ։

ԲԺԻՇԿ

Այնչափ հիւանդ չէ,
Մի՛լորդ, որչափ վըրդովուած երամահոծ ցնորքներից,
Որ նէրանից խըլում են քունն։

ՄԱԿԲԵԹ

Փարատիր նոցա ուրեմն։
Չե՞ս կարող բժիշկ լինել հիւանդացած մի հոգու,
Յիշողութեան միջից խլել հանել վիշտն արմատացած,
Դուրս քերել ուղեղի մէջ գրուած վշտերն ու հոգսերը,
Եւ քաղցր, մոռացուցիչ մի դեղթափի օգնութեամբ՝
Ծանրաբեռնուած կուրծքն ամոքել կորըստաբեր նիւթերից,
Որ ճնշում են նէրա սիրտը։

ԲԺԻՇԿ

Այս դէպքում պէտք է հիւանդն
Ինքնին հոգայ իւր վերայ։

ՄԱԿԲԵԹ

Դեղերդ ածիր շըների առաջ. նոքա ինձ պէտք չեն։—
Հագցրէք ինձ զրահներ. մականս բերէք։—Սէյտոն,
Նշան տուր դուրս յարձակուելու։—Բժիշկ, թէները փախ-
չում են։—
Եկ, շտապիր։—Եթէ կարող լինէիր, բժիշկ, քննել
Իմ տէրութեանս ջրերը, գտնել նոցա հիւանդութիւնն,
Եւ մաքրէիր, դարձնէիր նորա նախկին առողջ կեանքն՝
Ես ինքնին արձագանգի առաջ քեզ ծափ կտայի,
Որ նա կրկին ծափ տար քեզ։—Հեռացրու այս 1), ասում եմ։
Ո՞րպիսի խաւարծիլ, աճալ 2), կամ ո՞ր լուծողականն
Անգլիացոց դուրս կըվանէր։—Նոցա մասին լսեցի՞ր։

ԲԺԻՇԿ

Այո՛, տէր. ձեր մեծութեան արքայական պատրաստութիւնքն
Իմացում տալիս են մեզ։

ՄԱԿԲԵԹ

Իմ ետեւից բեր դու այդ 3)։
Մահ և դաւ սարսափեցնել ինձ չըպիտի կարողանան՝
Մինչև չըգայ Բէրնամի անտառը դէպի Դունսինան։ (Գնում է)։

---

1) Այսինքն՝ զրահները։ 2) Ֆօսսի թարգմանութեան մէջ՝ Rhabarber և Senna—լուծողական արմատներ։ 3) Այսինքն՝ զրահը։

*ԲԺԻՇԿ*

Թող ես մէկ Դունսինանից ազատուէի գնայի՝
Ոչ մի օգուտ ինձ չէր գրաւի, որ էլ այստեղ դառնայի։

*(Գնում են)։*

---

## ՉՈՐՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Վայր Դունսինանի մօտ։ Հեռուն անտառ։—Թմբուկներով և դրօշակներով ներս են մտնում ՄԱԼ՚ԿՈԼ՚Մ, ԾԵՐՈՒՆԻՆ ՍԻՎԱՐԴ և նորա ՈՐԴԻՆ, ՄԱԿԴՈՒՖ, ՄԷՆՏԷԹ, ԿԷԹՆԷՍ, ԱՆԳՈՒՍ, ԼԷՆՈԿՍ, ՌՕՍՍ և ԶԻՆՈՒՈՐՆԵՐ ռազմական գնացքով։

*ՄԱԼ՚ԿՈԼ՚Մ*

Ես յոյս ունիմ, եղբայրներ, թէ մօտեցան այն օրերն,
Որ մեր տներում ապահով լինինք։

*ՄԷՆՏԷԹ*

Այո՛, անկասկած։

*ՍԻՎԱՐԴ*

Այդ ինչ անտառ է մեր դիմաց։

*ՄԷՆՏԷԹ*

Դա Բէրնամի անտառն է։

*ՍԻՎԱՐԴ*

Թող ամեն մի զինուորական մի ճիւղ կտրէ իւր համար
Եւ տանի իւր առաջից։ Սորանով մենք կրսքօղենք
Մեր զօրքի քանակութիւնն և դէտերին կըսխալեցնենք
Մեր մասին տեղեկութեան մէջ։

*ԶԻՆՈՒՈՐՆԵՐ*

Այդպէս կըկատարուի։

*(Զինուորները գնում են)։*

*ՍԻՎԱՐԴ*

Մենք ուրիշ բան չենք լսում, բայց միայն այս, թէ
բռնաւորն

Դունսինանում նըստած է ամուր և մեր պաշարումին
Ըսպասում է վըստահաբար։

*ՄԱԼԿՈԼՄ*

Սա է նորա վերջին յոյսը.
Որովհետև որտեղ որ հանգամանքները ներում են՝
Բարձր և ըստոր՝ բոլորը ապըստամբում են նորա դէմ։
Նորան ոչ ոք չէ ծառայում, բացի ստիպուած ամբոխից,
Որ սիրտ չունի։

*ՄԱԿԴՈՒՖ*

Որպէս զի արդար լինի մեր դատաստանն՝
Պէտք է սպասենք գործի ելքին. իսկ ներկայումս զինուորական
Ճարտար գործի ձեռնարկենք։

*ՍԻՎԱՐԴ*

Մօտենում է ժամանակն՝
Արդարութեան երբ վըճիռն ծանօթութիւն մեզ կըտայ,
Թէ ինչ է մեր ունեցածն և ինչ ունինք անելու։
Մըտացածին ծըրագիրներն երազական յոյսեր են.
Բայց ապահով գործի ելքը պէտ՝ որոշեն մեր սըրերն։
Օ՜ն ուրեմն, յառաջենք դէպի կըռիւ։

(*Գնում՝ են ռազմական գնացքով*):

---

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Դունսինան ամրոցում.—ՄԱԿԲԵԹ, ՍԷՑՏՈՆ և ԶԻՆՈՒՈՐՆԵՐ թմբուկներով և դրօշակներով ներս են մտնում։

*ՄԱԿԲԵԹ*

Խարսխեցէք մեր դրօշակներն արտաքին պարըսպին վըրայ.
Գոչեցէք միշտ «գալիս են»։ Մեր բերդի ամրութիւնը
Ծաղր է անում պաշարումը։ Թող այստեղ նոքա նըստին՝
Մինչև նոցա ճարակեն քաղցածութիւնն ու ժանտախտը։
Եթէ նոցա կողմը չանցնէր մեր սեփական ժողովուրդն՝
Մենք համարձակ դէմ կելնէինք նոցա մօրուք-առ-մօրուք
Եւ կըրկին յետ կըմըղէինք։ (*Կնոջ աղաղակ ըստի ներսը*):

Ի՞նչ է այս աղաղակը։

*ՍԷՅՏՈՆ*

Կանացի աղաղակի ձայն է սա, տէր Թագաւոր։ (*Գնում է*)։

*ՄԱԿԲԵԹ*

Ես գրեթէ բոլորովին կորցրել եմ ահի ճաշակն։
Բայց ժամանակ կար, երբ իմ զգայութիւններս կըսառչէին
Գիշերային որևէ ճիչ լսելիս, երբ մազերըս
Ցցւում էին մի ահալի պատմութիւնից և ցընցւում
Որպէս թէ կեանք ունենային։ Այժմ յագել եմ սարսափներով.
Սոսկալին, ընտանեցած արիւնախանձ խորհուրդներիս՝
Այլ ևս ինձ չէ զարհուրեցնում։—(*ՍԷՅՏՈՆ կրկին գալիս է*)։
Ինչի՞ց էր այն աղաղակն։

*ՍԷՅՏՈՆ*

Թագուհին, տէր իմ, մեռաւ։

*ՄԱԿԲԵԹ*

Պէտք է փոքր ինչ ուշ մեռնէր։
Այդպիսի խօսք ասելու ժամանակն էլ հարկաւ կըգար
Երբևիցէ։ Եւ Վաղը, դարձեալ Վաղը, միշտ այս Վաղը
Օրըստօրէ սող-ի-սող մօտենում է մանրը քայլով
Մեր կեանքի նըշանակւած ժամանակի վերջին կէտին։
Եւ մեր բոլոր Երեկներն լուսաւորում են խենթերիս
Մահի ուղին փոշելից։ Հե՛րիք, հանգի՛ր, կարճ լապտեր։
Կեանքը՝ լոկ թափառական ստուեր է, մի խեղճ դերասան,
Որ սէգացած կատարում է իւր ժամը [1]) բեմի վերայ
Եւ յետոյ մոռացւում է յաւիտեան։ Խենթի պատմած
Մի հեքեաթ է նա, լըցւած մեծ գոռում ու գոչումով,
Բայց որ զուրկ է իմաստից։ (*Մի ՍՈՒՐՀԱՆԴԱԿ ներս է մտնում*)։
Լեզուիդ վերայ մի բան ունիս, որ եկար։ Դուրս տուր շուտով։

*ՍՈՒՐՀԱՆԴԱԿ*

Իմ բարի տէր, ես եկայ հաղորդելու ինչ որ տեսայ.
Բայց չըգիտեմ ինչպէս ասեմ։

---

1) Այսինքն՝ իւր դերը։

*ՄԱԿԲԵԹ*

Շուտով ասա, վերջացրու։

*ՍՈՒՐՀԱՆԴԱԿ*

Երբ բլուրի վերայ ես կանգնած էի հըսկողութեան
Եւ նայում դէպի Բէրնամ՝ ինձ այնպէս երևեցաւ,
Թէ անտառը շարժւում էր։

*ՄԱԿԲԵԹ*

Խաբեբա՛յ և ստրո՛ւկ։ (*Խըփում է*):

*ՍՈՒՐՀԱՆԴԱԿ*

Թող ենթարկւեմ ձեր բարկութեանն՝ եթէ ուղիղ չեմ ասում.—
Երեք մղոն հեռուից դուք նորան գալիս կըտեսնէք,
Ասում եմ՝ քայլող անտառ։

*ՄԱԿԲԵԹ*

Եթէ սուտ լինի ասածդ՝
Ամենամօտ ծառին վերայ դու կենդանոյն կըկախուիս,
Մինչև քաղցից չորանաս։ Իսկ եթէ ճիշտ ասացիր՝
Չեմ վըշտանայ իմ կողմից՝ եթէ նոյնը դու ինձ անես։—
Կորցնում եմ արիութիւնս և սկսում եմ կասկածել
Չար թշնամու երկիմաստ խօսքին վերայ, որ սըտում է
Ճշմարտանման։ "Մի՛ վախենար, մինչև անտառը Բէրնամի
Չըգայ դէպի Դունսինան"։ Եւ այժմ ահա մի անտառ
Գալիս է դէպի Դունսինան։—Ի զէ՛ն, ի զէ՛ն. դաշտ իջնենք։
Եթէ այն երևեցաւ, ինչ որ դա հաստատում է՝
Թէ փախչելն ասկից և թէ այստեղ մընալն անօգուտ է։
Արեգակի լոյսից արդէն սկըսում եմ ձանձրանալ,
Եւ ուզում եմ, որ աշխարհի շինուածքը ոչընչանար։
Յարձակումի փողն հընչեցրէք։ Շըռնչիր, հողմ, եկ, կոտորած։
Մենք կըմեռնենք՝ գոնէ գըլխից մինչև ոտք զըրահաւորած։
(*Գնում են*):

---

## ՎԵՑԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Նոյն տեղում։ Տափարակութիւն ամրոցին առաջ։—Թմբուկներով և դրօշակներով ներս են մտնում ՄԱԼԿՈԼՄ, ԾԵՐՈՒՆԻՆ ՍԻՎԱՐԴ, ՄԱԿԴՈՒՖ և այլն և նոցա ԲԱՆԱԿԸ ծառի ճիւղերով։

*ՄԱԼԿՈԼՄ*

Արդէն մօտ ենք. ձգեցէք ձեր տերեւէ վահաններն
Եւ երեւցէք ինչպէս որ էք։—(*Սիւարդին*) Դուք, պատուական հօրեղբայր,
Հանեցէք եղբօրորդուս, ձեր ազնուական որդուն հետ
Առաջնորդել նախամարտիկ գնդին. ազնիւ Մակդուֆն և ես
Կըհոգանք՝ ինչ որ մնայ սորանից զատ անելու,
Համաձայն մեր կարգադրութեան։

*ՍԻՎԱՐԴ*

Ուրեմն գնաք բարով։
Եթէ գիշեր դեռ չեղած բռնաւորի զօրքը գտնենք՝
Կոտորուած լինինք մենք՝ եթէ նորան չըխորտակենք։

*ՄԱԿԴՈՒՖ*

Հնչեցրէք բարձրաձայն, խօսեցրէք բոլոր փողերն,
Արիւնի և մահի այդ բարձրագոչ մունետիկներն։
(*Գնում են։ Պատերազմի փողեր*)։

---

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՏԵՍԱՐԱՆ

Նոյն տեղում։ Տափարակութեան մի ուրիշ մասը։—ՄԱԿԲԵԹ ներս է մտնում։

*ՄԱԿԲԵԹ*

Ես կարծես կապուած լինիմ սիւնից. փախչել չեմ կարող.
Բայց, արջի պէս, պէտք է կռուիմ հալածուելիս։—Ո՞վ է այն,
Որ չէ ծնուել կնոջից. պէտք է ես վախենամ այնպիսուց,
Կամ ոչ ոքից։ (*ԵՐԻՏԱՍԱՐԴ ՍԻՎԱՐԴ ներս է մտնում*)։

*ԵՐԻՏ. ՍԻՎԱՐԴ*

Անունդ ասա։

*ՄԱԿԲԵԹ*

Կըդողաս, եթէ լսես։

*ԵՐԻՏ. ՍԻՎԱՐԴ*

Ո՛չ, եթէ կոչուիս էլ դու հրեղինագոյն անունով,
Որ դժոխքում միայն լինի։

ՄԱԿԲԵԹ

Մակբեթ է իմ անունը։

ԵՐԻՏ. ՍԻՎԱՐԴ

Սատանան իսկ չէ կարող արտաբերել մի անուն,
Ինձ աւելի զզուելի։

ՄԱԿԲԵԹ

Եւ աւելի զարհուրելի։

ԵՐԻՏ. ՍԻՎԱՐԴ

Ստում ես, դու զարշելի բռնաւոր. ես սրովըս
Կապացուցեմ թէ ստում ես։

(*Կռւում են. երիտասարդ Սիվարդը զարկւում է*)։

ՄԱԿԲԵԹ

Դու մօրից էիր ծընած։
Ես ծաղրում եմ այն սուրը, այն զէնքերն արհամարհում,
Որ մօրից ծընած մէկը ինձի դէմ է բարձրացնում։ (*Գնում է*)։

(*Մարտադաշտ։ ՄԱԿԴՈՒՖ ներս է մտնում*)։

ՄԱԿԴՈՒՖ

Աղաղակն այս կողմումն էր։—Բռնաւոր, ցոյց տուր դէմքըդ։
Եթէ դու ըսպանուելու լինիս, բայց ոչ իմ հարուածից՝
Ինձ կըտանջեն ապա կընիս ւ'որդիներիս հոգիները։
Ես չեմ կարող զարնել խեղճուկ Կերներին, որոնց ձեռներն
Վարձուած են՝ միայն նիզակ բռնելու։ Կամ դո՛ւն, Մակբեթ,
Կամ սուրըս, չբըթացած սայրով՝ կըրկին իւր պատեանը
Կըդընեմ անգործութեամբ։ Այդտեղ պէտք է լինիս դու.
Այդ սըրաձայն շառաչիւնը ցոյց է տալիս, որ այդտեղ
Նըշանաւոր մի մարզիկ կայ։—Բախտ, թող ինձ գըտնեմ
նըրան—
Եւ ոչինչ աւելի ես չեմ խընդրի քեզանից։ (*Գնում է*)։

(*Մարտադաշտ։ ՄԱԼԿՈԼՄ և ԾԵՐՈՒՆԻՆ ՍԻՎԱՐԴ ներս են մտնում*)։

ՍԻՎԱՐԴ

Այստեղ, տէր։ Անձնատուր եղաւ ամրոցը կամովին։
Բռնաւորի ժողովուրդն երկու կողմիցն էլ կըռւում է [1].

1) Մասամբ Մակբեթի կողմից և մասամբ նորա դէմ։ Հ. Թ.

Ազնըւական թէնները արի եղան կըռուին մէջ։
Օրը գրեթէ խոստովանում է ինքնին, որ ձերն է։
Անելու բան քիչ է մնում։

*ՄԱԼԿՈԼՄ*

Մենք գըտանք թըշնամիներ,
Որ օգի հետ են կըռւում։

*ՍԻՎԱՐԴ*

Տէր իմ մըտնենք ամրոցը։ *(Գնում են):*
*(ՄԱԿԲԵԹ կրկին ներս է մտնում):*

*ՄԱԿԲԵԹ*

Ինչու՞ ես հռոմայեցի յիմարին դերը խաղամ
Եւ մեռնեմ իմ սեփական սըրով 1)։ Քանի դեռ տեսնում եմ
Ապրողներ՝ լաւագոյն է նոցա պահել հարուածը։
*(ՄԱԿԴՈՒՖ վերադառնում է):*

*ՄԱԿԴՈՒՖ*

Դարձի՛ր, դըժոխքի շուն, յետ դարձիր։

*ՄԱԿԲԵԹ*

Միայն քեզնից խուսափում էի բոլոր մարդերի մէջ։
Բայց հեռացիր. հոգիս արդէն ծանրաբեռնուած է բաւական
Ընտանիքիդ արիւնովը։

*ՄԱԿԴՈՒՖ*

Ոչ մի խօսք ես չունիմ.
Սըրիս մէջն է իմ ձայնըս, արիւնարբու ապիրատ,
Որին անուն չէ կարելի գըտնել։ *(Կռւում են):*

*ՄԱԿԲԵԹ*

Զուր ես աշխատում.
Աւելի դիւրին է քեզ անըաժան օդը կըտրել
Քո սայրասուր այդ սըրով, քան թէ ինձ վիրաւորել։
Թող նա ուրեմն ընկնի վէրքի ենթարկուած կառափի վրայ։
Հըմայուած մի կեանք ունիմ ես, որ երբէք չի ընկճըւի
Կընից ծընուած մարդի ձեռքով։

*ՄԱԿԴՈՒՖ*

Յուսըդ կըտրիր հըմայքըդ,

---

1) Ակնարկութիւն Ներոնի անձնասպանութեան վերայ։ Հ. Թ.

Եւ թող քեզ այն հրեշտակը, որին դու ծառայել ես՝
Յայտարարէ, թէ Մակդուֆ ժամանակից վաղահաս
Մօր արգանդից դուրս է կտրած։

ՄԱԿԲԵԹ

Թող անիծուած լինի այն լեզուն, որ ինձ այս ասաց.
Որովհետեւ դող հանեց նա արութեանս լաւագոյն մասին։
Պէտք չէ այլ եւս հաւատալ խաբեբայ չար թշնամուն,
Որ երկիմաստ խօսքերով մեր գլխին խաղ է խաղում,
Որ խոստմունքի խօսքը պահում է միայն մեր ականջին,
Իսկ մեր յոյսին՝ դրժում է [1]։—Չեմ ուզում կռուել քեզ հետ։

ՄԱԿԴՈՒՖ

Անձնատուր եղիր ուրեմն, ո՛վ երկչոտ, և ապրիր՝
Որ աշխարհին տեսարան և ապշութեան նիւթ դառնաս։
Հազուագիւտ հրէշների նման մենք քո պատկերըդ
Կընկարենք սիւնի վրայ և կըգըրենք ներքեւում.
«Բռնաւորին կարող էք տեսնել այստեղ»։

ՄԱԿԲԵԹ

Չեմ յանձնուի,
Որ պատանեակ Մալ՛կոլ՛մի ոտքին առաջ ես փոշին
Համբուրեմ և նըշաւակ դառնամ ռամկի անէծքներին։
Թէպէտ եկաւ Բէրնամի անտառը դէպի Դունսինան,
Եւ դու էլ, իմ ախոյեան, թէպէտ ծընուած չես կընից՝
Բայց վերջին փորձը կանեմ, մարմնիս առաջ կըձըգեմ
Ես ռազմական վահանը։ Յարձակուիր ուրեմն, Մակդուֆ,
Եւ անիծեալ թող լինի՝ ով նախ գոչէ «Հերիք է»։

*(Կռուելով գնում՝ են:—Մակբեթի զօրքերը նահանջում են:—Փողերի ձայն:*
*Թմբուկներով և դրօշակներով ներս են մտնում՝ ՄԱԼ՚ԿՈԼ՚Մ, ԾԵՐՈՒՆԻ ՍԻՎԱՐԴ, ՌՕՍՍ, ԼԷՆՈԿՍ, ԱՆԳՈՒՍ, ԿԷԹՆԷՍ, ՄԷՆՏԷԹ և ԶԻՆՈՒՈՐՆԵՐ):*

---

1) Մեր ականջի վերաբերութեամբ խօսքը կատարում է, տառացի կերպով. իսկ մեր յոյսի վերաբերութեամբ (խօսքի բուն նշանակութեան վերաբերութեամբ, ինչպէս մենք հասկանում և յուսում էինք) դրժում է։ Հ. Թ.

*ՄԱԼԿՈԼՄ*

Երանի՜ մեր բացակայ բարեկամներն ողջամբ գային։

*ՍԻՎԱՐԴ*

Առանց զոհի չի լինի. բայց ես որչափ տեսնում եմ՝
Բաւական աժան գընաւեց այսպիսի յաղթական օրն։

*ՄԱԼԿՈԼՄ*

Բացակայ է դեռ Մակդուֆ, նոյնպէս և ձեր ազնիւ որդին։

*ՌՕՍՍ (Սիվարդին)*

Ձեր որդին, տէր իմ, արդէն վըճարեց զինւորի պարտքն։
Այնչափ միայն նա ապրեց, մինչև դարձաւ այր կատարեալ.
Եւ հազիւ իւր քաջութեամբ ապացուցել էր նա այս՝
Որ առանց նահանջելու իւր դիրքից, ուր կռւում էր՝
Նա ընկաւ իբրև այր։

*ՍԻՎԱՐԴ*

Ուրեմըն մեռած է նա։

*ՌՕՍՍ*

Այո՛, արդէն դաշտից վերցուած։ Բայց պէտք չէ, որ ձեր սուգը
Համաչափ լինի նորա քաջութեան, ապա թէ ոչ՝
Անսահման կըլինէր այն։

*ՍԻՎԱՐԴ*

Վէրք առաջից է ստացել։

*ՌՕՍՍ*

Այո՛, ճակտին։

*ՍԻՎԱՐԴ*

Թող ուրեմն զինւոր լինի նա Աստծու։—
Եթէ ես այնքան որդի ունենայի, որքան մազ՝
Նոցա քան այս լաւագոյն մահ ես չէի ցանկանայ։
Այս է նորա մահի զանգակն։

*ՄԱԼԿՈԼՄ*

Աւելի սուգ հարկ է նորան,
Եւ ես այս կըտնօրինեմ։

*ՍԻՎԱՐԴ*

Աւելին հարկ չէ նորան։

Ասուած է. Նա լաւ գընաց և իւր պարտքը վըճարեց։
Աստուած իւր հետ։—Ահա գալիս է մեզ նոր մխիթարութիւն։

*(ՄԱԿԴՈՒՖ կրկին ներս է մտնում, Մակբեթի գլուխը նիզակին ցցած)։*

*ՄԱԿԴՈՒՖ*

Ողջ լեր, արքայ. այս ես դու։ Տես, ահա կողոպտիչի
Անիծապարտ գըլուխը։ Այլ ևս ազատ է աշխարհն։—
Քեզ տեսնում եմ շըրջապատուած տէրութեան գոհարներից,
Եւ բոլորի սըրտերում անդրադառնում է իմ ողջոյնս
Ցանկանում եմ, որ բոլորն ինձ հետ մէկտեղ բացագանչեն.
«Ողջ լեր, արքայ Սկովտիայի»։

*ԱՄԵՆՔԸ*

Ողջ լեր, արքայ Սկովտիայի։ *(Փողեր)*։

*ՄԱԼԿՈԼՄ*

Հարկ չէ մեզ շըռայլել ժամանակի մեծ քանակ
Ձեզանից իւրաքանչիւր մէկի սէրը չըգնահատած
Եւ ամենին չըվարձատրած։—Դուք թէներ և' ազգակիցներ,
Այսուհետև դուքս եղէք, առաջիններն, որ Սկովտիա
Ողջունում է այս պատւով։ Ինչ որ դեռ գործելու է
Եւ ինչ որ ժամանակով պէտք է անել նոր-ի-նորոյ,—
Ինչպէս մեր արտաքսուած բարեկամներն յետ կոչել,
Որ խոյս են տուել կասկածոտ բըռնաւորի ցանցերից,
Քըննել նոցա, որ կատաղի պաշտօնեայ էին դարձել
Այն մեռած մըսագործին և դիւանման թագուհուն,
Որ, ինչպէս ասում են՝ անձամբ խըլեց իւր կեանքը
Իւր վայրենի ձեռներով—այս և ուրիշ կարիքներն
Որ մեր խնամքին պէտք ունին՝ մենք զօրութեամբ Հըզօրին
Կըկատարենք ըստ տեղոյն, ժամանակին և չափին։—
Շնորհակալ ենք ամեն մէկիցդ և բոլորիցդ համայէս,
Որոնց Սկօն ենք հրաւիրում, թագադրութեան հանդիսատես։

**ՎԵՐՋ**

